Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



ԴԵԿՏԵՄԲԵՐ
12
1989

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է
1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ

## Բովանդակություն



ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 53—86—11



# ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԵՎ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ԱԶԳԱՅԻՆ ԽՈՐՀՐԴԻ

# ՈՐՈՇՈՒՄԸ

## «Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում իրադրությունը նորմալացնելու միջոցառումների մասին» ԽՍՀՄ Գերագույն խորհրդի 1989 թվականի նոյեմբերի 28-ի որոշման մասին

*ԽՍՀՄ Գերագույն խորհրդի 1989 թվականի նոյեմբերի 28-ի որոշմամբ նախատեսվում է Լեռնային Ղարաբաղը փաստորեն բռնությամբ Ադրբեջանական ԽՍՀ իշխանության տակ կրկին վերադարձնելը՝ հակառակ նրա հայ ազգաբնակչության հստակ արտահայտված կամքի, որը բազմիցս հաստատված և պատշաճ ձևով վավերագրված է նրա ներկայացուցչական մարմինների որոշումներում։*

*Այդ որոշումն ընդունվել է այնպիսի պայմաններում, երբ Ադրբեջանական ԽՍՀ ղեկավարությունը հրաժարվում է Սումգայիթում տեղի ունեցած ցեղասպանության ակտի, Շուշիում, Բաքվում, Կիրովաբադում և Ադրբեջանական ԽՍՀ մյուս քաղաքներում ու շրջաններում ջարդերի ու սպանությունների քաղաքական ու իրավական պատշաճ որակավորումից, այնպիսի պայմաններում, երբ ԼՂԻՄ-ը գրեթե երկու տարի գտնվում է շրջափակման մեջ և չի ապահովվում Լեռնային Ղարաբաղի հայ ազգաբնակչության անվտանգությունը, այնպիսի պայմաններում, երբ Ադրբեջանական ԽՍՀ Գերագույն խորհուրդն ընդունել է սահմանադրական օրենք, որը որպես նպատակ բացահայտորեն հռչակում է այդ հայ ազգային-պետական կազմավորման ոչնչացումը, այնպիսի պայմաններում, երբ Հայաստանը ավերիչ երկրաշարժից հետո պարբերաբար ենթարկվում է շրջափակման։*

*ԽՍՀՄ Գերագույն խորհրդի որոշումն ընդունվել է շրջանցելով դեմոկրատական պառլամենտական ընթացակարգը։ Տեղում իրադրությունը պարզելու և ԼՂԻՄ-ի պրոբլեմի լուծման վերաբերյալ համապատասխան հանձնարարականներ ներկայացնելու համար ստեղծված՝ ԽՍՀՄ Գերագույն խորհրդի հանձնաժողովին թույլ չի տրվել իր եզրահանգումների մասին զեկուցել ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նստաշրջանում։ Լեռնային Ղարաբաղի և Հայկական ԽՍՀ-ի հայ ազգաբնակչությունը ներկայացնող ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների կարծիքը ամբողջովին և ցուցադրաբար անտեսվել է։ Որոշումն ընդունվել է հապշտապ, առանց քննարկման, ԼՂԻՄ-ից և Հայկական ԽՍՀ-ից ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների բացակայությամբ, որոնք ի նշան բողոքի լքել են նիստերի դահլիճը։*

*Ընդունված որոշումը նահանջ է առանց այն էլ սահմանափակ այն միջոցառումներից, որոնց կատարումը ներկայացվում էր որպես իրավական հիման վրա Լեռնային Ղարաբաղի պրոբլեմի քաղաքական լուծման անհրաժեշտ պայման։ Հատուկ կառավարման կոմիտեի գործունեությունը, որպես ազգի ինքնորոշման իրավունքի հիման վրա հարցի լուծման փուլ, ամրապնդելու փոխարեն, այն փոխարինվում է մի մարմնով, որը կարող է միայն ժամանակավորապես իրականացնել վերահսկիչ-վերադիտող ֆունկցիաներ այն պայմաններում, երբ նախատեսվում է իրական իշխանությունը նորից վերադարձնել Ադրբեջանական ԽՍՀ-ին։ Հայ ազգաբնակչության կյանքի և անվտանգության, ազգային նորմալ զարգացման իրավունքի պետական-իրավական ռեալ երաշխիքների փոխարեն առաջարկվում է բավարարվել նրանց խոստումներով, ովքեր չեն հրաժարվել մարզը բռնի կերպով իրենց ենթակայության տակ պահելու մտադրություններից։ Հայ ժողովուրդն իր պատմության ընթացքում մեկ անգամ չէ, որ ստացել է նման խոստումներ և գիտի դրանց իսկական արժեքը։ Միլիոնավոր որդիներ ու դուստրեր կորցրած հայ ժողովուրդը թույլ չի տա վտանգի ենթարկել իր հայրենակիցների կյանքը Լեռնային Ղարաբաղում։ Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը առաջին հերթին նրա ազգաբնակչության ինք-*

նորոշման հարցն է, իր ճակատագիրը անձամբ որոշելու նրա իրավունքի ապահովման հարցը: Միայն ինքնորոշման դեմոկրատական հիման վրա այդ պրոբլեմի լուծմամբ է հնարավոր ապագայում նորմալ հարաբերությունների ստեղծումը հայ և ադրբեջանական ժողովուրդների միջև:

Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը և Լեռնային Ղարաբաղի Ազգային խորհուրդը ՈՐՈՇՈՒՄ ԵՆ.

1. ԽՍՀՄ Գերագույն խորհրդի որոշմամբ նախատեսված՝ Լեռնային Ղարաբաղի բնակչության բացարձակ մեծամասնության կամքին հակառակ նրա բռնի վերադարձումը Ադրբեջանական ԽՍՀ իշխանության տակ և մարզը բռնությամբ Ադրբեջանի կազմում պահելը միջազգային ու սահմանադրական իրավունքի նորմաներին համապատասխան որակավորել որպես բռնակցման նոր ակտ:

2. Բռնությամբ անջատված հայ ժողովրդի մի մասի՝ Լեռնային Ղարաբաղի բնակչության ինքնորոշման իրավունքի ժխտումը ամբողջ հայ ժողովրդի ինքնորոշման իրավունքի անտեսումն է և կոպտորեն ոտնահարում է խորհրդային ֆեդերացիայում ԽՍՀՄ ժողովուրդների կամավոր միավորման սկզբունքը, ուղղակիորեն հակասում է ԽՍՀՄ սահմանադրության հիմնարար սկզբունքին և խախտում է ԽՍՀՄ միջազգային պարտավորությունները, այդ թվում ՄԱԿ-ի կանոնադրության, Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության մասնակից պետությունների ներկայացուցիչների Վիեննայի հանդիպման եզրափակիչ ակտի և ամփոփիչ փաստաթղթի գծով, որոնք պետություններին պարտավորեցնում են իրենց օրենքները, կանոններն ու քաղաքականությունը համապատասխանեցնել միջազգային իրավունքի վերաբերյալ նրանց պարտավորություններին, ներառյալ իրավահավասարության և իրենց ճակատագիրը տնօրինելու, ներքին ու արտաքին քաղաքական ստատուսը ըստ իրենց հայեցողության որոշելու՝ ժողովուրդների իրավունքի սկզբունքը:

3. ԽՍՀՄ Գերագույն խորհրդի որոշումը՝ որպես ինքնորոշման սկզբունքին, ԽՍՀՄ կազմի մեջ հայ ժողովրդի մուտք գործելու պայմաններին, ԽՍՀՄ և Հայկական ԽՍՀ սահմանադրությանը, ինչպես նաև ԽՍՀՄ-ի և խորհրդային ֆեդերացիայի սուբյեկտների միջազգային պարտավորություններին հակասող որոշում, հայտարարվում է անվավեր Հայկական ԽՍՀ-ի և Լեռնային Ղարաբաղի համար և ոչ մի իրավական հետևանքներ չի ստեղծում:

4. Հայ ժողովրդի և բռնությամբ անջատված նրա մի մասի՝ Լեռնային Ղարաբաղի բնակչության ինքնորոշման իրավունքի խախտման դեմ բողոքով դիմել ԽՍՀՄ Գերագույն խորհրդին, բոլոր միութենական հանրապետությունների գերագույն խորհուրդներին, ՄԱԿ-ի անդամ պետությունների պառլամենտներին, ներառյալ Եվրոպայում անվտանգության ու համագործակցության վերաբերյալ խորհրդակցության մասնակից պետություններին և Եվրոպական պառլամենտին:

5. Հանձնարարել Հայկական ԽՍՀ արտաքին գործերի մինիստրությանը, արտասահմանյան երկրների հետ բարեկամության և մշակութային կապերի հայկական ընկերությանը, սփյուռքահայության հետ մշակութային կապերի կոմիտեին, Արմենպրեսին՝ արտասահմանյան բոլոր հայ համայնքներին տեղյակ պահել ԽՍՀՄ Գերագույն խորհրդի ընդունած որոշման, սույն որոշման մասին, կոչ անել էլ ավելի համախմբվել մայր հայրենիքի շուրջը՝ ի պաշտպանություն հայ ժողովրդի ոտնահարված իրավունքների:

6. Հայկական ԽՍՀ-ը և ԼՂԻՄ-ը ներկայացնող ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների նիստերի դահլիճից հեռանալու պահից ընդունված՝ ԽՍՀՄ Գերագույն խորհրդի բոլոր որոշումները, հայ ժողովրդի իրավունքներին և շահերին դրանց չհամապատասխանելու դեպքում, համարել չգործող:

Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության
նախագահ՝ Հ. ՈՍԿԱՆՅԱՆ

Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության
քարտուղար՝ Ն. ՍՏԵՓԱՆՅԱՆ

Լեռնային Ղարաբաղի Ազգային խորհրդի
նախագահ՝ Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

1 դեկտեմբերի 1989 թվականի, քաղ. Երևան

# ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԵՎ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ԱԶԳԱՅԻՆ ԽՈՐՀՐԴԻ

# ՈՐՈՇՈՒՄԸ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ-Ի ԵՎ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՎԵՐԱՄԻԱՎՈՐՄԱՆ ՄԱՍԻՆ

Հիմնվելով ազգերի ինքնորոշման համամարդկային սկզբունքների վրա և արձագանքելով հայ ժողովրդի՝ բռնի ուժով բաժանված երկու հատվածների վերամիավորման օրինական ձգտմանը, Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը և Լեռնային Ղարաբաղի Ազգային խորհուրդը ՈՐՈՇՈՒՄ ԵՆ.

1. Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը ճանաչում է Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի ինքնորոշման փաստը՝ հաստատված ԼՂԻՄ-ի մարզային խորհրդի 1988 թվականի փետրվարի 20-ի և հուլիսի 12-ի նստաշրջանների, ինչպես նաև մարզի բնակչության լիազոր-ներկայացուցիչների 1989 թվականի օգոստոսի 16-ի համագումարի և Ազգային խորհրդի հոկտեմբերի 19-ի նիստի որոշումներում:

2. Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը ճանաչում է Լեռնային Ղարաբաղի լիազոր-ներկայացուցիչների համագումարը և նրա ընտրած Ազգային խորհուրդը որպես մարզի ներկայումս գործող միակ օրինական իշխանություն:

3. Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը և Լեռնային Ղարաբաղի Ազգային խորհուրդը հռչակում են Հայկական ԽՍՀ-ի և Լեռնային Ղարաբաղի վերամիավորումը: Լեռնային Ղարաբաղի բնակչության վրա տարածվում են Հայկական ԽՍՀ-ի քաղաքացիության իրավունքները:

4. Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը և Լեռնային Ղարաբաղի Ազգային խորհուրդը ստեղծում են համատեղ հանձնաժողով (իր աշխատանքային ապարատով)՝ Հայկական ԽՍՀ-ի և Լեռնային Ղարաբաղի վերամիավորումն իրագործելու ուղղությամբ գործնական քայլեր մշակելու համար:

5. Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը և Լեռնային Ղարաբաղի Ազգային խորհուրդը պարտավորվում են ներկայացնել Հյուսիսային Արցախի Շահումյանի շրջանի և Գետաշենի ենթաշրջանի հայ բնակչության ազգային շահերը:

6. Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահությանը, Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդին և ԼՂԻՄ-ի Ազգային խորհրդի նախագահությանը հանձնարարվում է գործադրել սույն որոշումից բխող բոլոր անհրաժեշտ միջոցառումները՝ իրականացնելու համար Հայկական ԽՍՀ-ի և Լեռնային Ղարաբաղի քաղաքական, տնտեսական և մշակութային կառուցվածքների իրական միաձուլումը միասնական պետական-քաղաքական համակարգում:

Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության
նախագահ՝ Հ. ՈՍԿԱՆՅԱՆ

Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության
քարտուղար՝ Ն. ՍՏԵՓԱՆՅԱՆ

Լեռնային Ղարաբաղի Ազգային խորհրդի
նախագահ՝ Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

1 դեկտեմբերի 1989 թվականի, քաղ. Երևան

## ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԵՎ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ԱԶԳԱՅԻՆ ԽՈՐՀՐԴԻ

# Ո Ր Ո Շ Ո Ւ Մ Ը

## ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ ԱՄՆ-Ի ՍԵՆԱՏԻ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ԲԱՆԱՁԵՎԻ ԱՌԹԻՎ ԽՍՀՄ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը և Լեռնային Ղարաբաղի Ազգային
խորհուրդը իրենց անհամաձայնությունն ու վճռական բողոքն են հայտնում
Լեռնային Ղարաբաղի վերաբերյալ ԱՄՆ-ի սենատի արտաքին գործերի հանձ-
նաժողովի բանաձևի առթիվ ԽՍՀՄ արտաքին գործերի մինիստրության 1989
թվականի նոյեմբերի 19-ի հայտարարության դեմ, որը նպատակ է հետա-
պնդում ապակողմնորոշել համաշխարհային հասարակական կարծիքը։*

*ԱՄՆ-ի սենատի արտաքին գործերի հանձնաժողովի բանաձևը և դրա հա-
վանությունը սենատի կողմից Հայկական ԽՍՀ և Լեռնային Ղարաբաղի բնակ-
չությունը ընկալում է իբրև ռեգիոնի ձգձգվող քաղաքական ճգնաժամի առթիվ
ամերիկյան ժողովրդի մտահոգության արտահայտություն, ինքնորոշման մա-
սին Լեռնային Ղարաբաղի բնակչության արդարացի պահանջի պաշտպանու-
թյուն և ըմբռնում։*

*Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը և Լեռնային Ղարաբաղի Ազգային
խորհուրդը ափսոսանք են հայտնում, որ մեր օրերում, վերակառուցման և նոր
մտածողության ժամանակաշրջանում ժողովրդի ինքնորոշման գաղափարի
պաշտպանությունը, գաղափար, որը համապատասխանում է խորհրդային
Միության միջազգային բոլոր պայմանագրերին ու պարտավորություններին,
ԽՍՀՄ արտաքին գործերի մինիստրության կողմից դիտվում է որպես «սադրիչ
գործողություն» և միջամտություն երկրի ներքին գործերին։ Նրանք ԽՍՀՄ ար-
տաքին գործերի մինիստրության հայտարարությունը դիտում են իբրև մի
գործողություն, որը ոչ մի չափով չի արտացոլում հայ ժողովրդի կարծիքը և
օրինական շահերը և արված է առանց Լեռնային Ղարաբաղի ու Հայկական
ԽՍՀ ժողովրդի կարծիքը հաշվի առնելու։*

*Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը և Լեռնային Ղարաբաղի Ազգային
խորհուրդը պահանջում են ԽՍՀՄ արտաքին գործերի մինիստրությունից այ-
սուհետև բացառել հայ ժողովրդի շահերին վերաբերող կամ նրա անունից
արվող որևէ հայտարարություն՝ առանց համաձայնեցնելու Հայկական ԽՍՀ
արտաքին գործերի մինիստրության հետ։*

*Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը և Լեռնային Ղարաբաղի Ազգային
խորհուրդը նպատակահարմար են համարում իրենց կարծիքը հասցնել ԽՍՀՄ
ժողովրդական դեպուտատների երկրորդ համագումարին և ԽՍՀՄ արտաքին
գործերի մինիստրությանը։*

Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության<br>
նախագահ՝ Հ. ՈՍԿԱՆՅԱՆ

Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության<br>
քարտուղար՝ Ն. ՍՏԵՓԱՆՅԱՆ

Լեռնային Ղարաբաղի Ազգային խորհրդի<br>
նախագահ՝ Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

*1 դեկտեմբերի 1989 թվականի, քաղ. Երևան*



# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԳԻՏԱԿԱՆ ԿԵՐՊԱՐԸ

... պրոլետարական հեղափոխությունները... շարունակ քննա-
դատում են իրենք իրենց, երբեմն կանգ առնում իրենց ընթացքում,
վերադառնում են նրան, ինչ արդեն կատարված է թվում...

Կ. ՄԱՐՔՍ

Լ. ՇԻՐԻՆՅԱՆ

*ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԱՐԴԻԱԿԱՆ ՄՈԴԵԼԻ ՄՇԱԿՈՒՄԸ, որը բխում է նրա
ժամանակակից սոցիալական պրակտիկայից, հրատապ է և խիստ
անհրաժեշտ։ Այդ խնդիրը, մեր կարծիքով, ենթադրում է նաև երկու փոխկա-
պակցված հարցերի քննարկում. առաջին, դիալեկտիկայի կարևոր սկզբունքի՝
պատմականության տեսանկյունից հետևել սոցիալիզմի գիտական իդեալի
էվոլյուցիային և կոնկրետացմանը (ուղղահայաց հատույթ), երկրորդ, բոլոր
դժվարություններով ու տարակարծություններով հանդերձ վեր հանել սոցիա-
լիզմը բնորոշող հիմնական բնութագրերը, վերստեղծել նրա ընդհանուր պատ-
կերը (հորիզոնական հատույթ)։*

*Կոմունիստական ֆորմացիայի գիտական մոդել բնութագրումը տրվեց
Կ. Մարքսի «Գոթայի ծրագրի քննադատությունը» աշխատության մեջ, որն
ամփոփում է մարքսիզմի դասականների նախորդ հետազոտությունների եզ-
րահանգումները։ Այնուհետև Վ. Ի. Լենինը, անդրադառնալով մարքսյան մո-
դելին, շեշտում է հասարակության բնականոն զարգացման փուլերի վրայով
թռչելու անհնարինությունը։*

*Կուսակցությունը 30-ական թվականների երկրորդ կեսերին եզրակաց-
րեց, որ ԽՍՀՄ-ում կապիտալիզմից դեպի սոցիալիզմ անցման շրջանն ա-
վարտվել է, «ով-ում»-ի հարցը լուծվել է հօգուտ սոցիալիզմի և երկրում «հիմ-
նականում իրականացված է կոմունիզմի առաջին փուլը՝ սոցիալիզմը», որ
անցման շրջանի ավարտից հետո ԽՍՀՄ-ը «թևակոխեց զարգացման նոր շըր-
ջան, անդասակարգ սոցիալիստական հասարակության կառուցումն ավար-
տելու և սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջանը...»։
ԽՄԿԿ-ն քննարկվող հարցերին անդրադարձավ նորից իր XXI համագումա-
րում (1959 թ.), և հայտարարեց, որ ԽՍՀՄ-ն «թևակոխել է պատմական զար-
գացման նոր ժամանակաշրջան։ Սոցիալիզմը մեր երկրում լիակատար և
վերջնական հաղթանակ է տարել»։*

*Հեղափոխությունից հետո սոցիալիզմի վերաբերյալ իշխող էր կարճա-
ժամկետ, հպանցիկ զարգացման ժամանակաշրջանի պատկերացումը։ Նման
տեսակետն, առհասարակ, մեր կարծիքով, բնորոշ է հեղափոխական ռոման-
տիզմին, հեղափոխականների այն սերնդին, որոնք «արագացված» զարգաց-
ման ճանապարհով ցանկանում են մարդկությանը ինչքան հնարավոր է ա-
րագ ազատել անարդարություններից և շահագործումից։ Այդ «թերությունից»
զերծ չէին նաև գիտական կոմունիզմի հիմնադիրները։ «Մարքսն ու Էնգելսը
(վերջինս էլ ավելի, քան առաջինը),— գրում է գերմանական սոցիալ-դեմո-*

ՇԻՐԻՆՅԱՆ ԼԵՎՈՆ ՂԱԶԱՐԻ— ԵրՊԻ-ի գիտական կոմունիզմի ամբիոնի դոցենտի պաշտո-
նակատար, փիլիսոփայական գիտությունների թեկնածու։

***

Ո՞րն է սոցիալիզմի այն կերպարը, հանուն որի անձնուրաց պայքար են մղել աշխատավորության մի շարք սերունդներ, որին իրենց կյանքն են նվիրաբերել մարդկության նշանավոր ներկայացուցիչներ և որի հետ, վերջապես, այժմ հույս են կապել սոցիալիզմի աշխարհի ժողովուրդները, համաշխարհային կոմունիստական շարժումը և, ինչու՞ չէ, նաև աշխարհի ողջ քաղաքակիրթ մարդկությունը։ Անկասկած, այն իր մեջ սինթեզում է Մարքսի, Էնգելսի և հատկապես Լենինի սոցիալիստական ուսմունքը, համաշխարհային սոցիալիզմի պրակտիկան, նաև սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների դրական ձեռքբերումներն ու զարգացած կապիտալիզմի նվաճումները տեխնոլոգիայի, գիտության ու սոցիալական կյանքի բոլոր ոլորտներում։

Սոցիալիստական իդեալը գիտական է այնքանով, որքանով արտացոլումն է հասարակական կյանքի օրինաչափությունների, հիմնավորված տնտեսապես, որքանով հենվում է նոր տնտեսական հարաբերությունների վրա, ունի նորագույն նյութատեխնիկական ու տեխնոլոգիական բազա։ Հասկանալի է, սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո առաջին հերթին արմատական փոփոխության պետք է ենթարկվի (և ենթարկվում է) սեփականության մասնավոր ձևը։ Պարզ է, որ տնտեսության գլխավոր ճյուղերում հաստատվում է սեփականության հանրային ձևը։ Այն հարցին, թե որն է կոմունիստների նպատակը, Ֆ. Էնգելսը պատասխանում է. «Հասարակությունը վերափոխել այնպես, որպեսզի նրա յուրաքանչյուր անդամ միանգամայն ազատ կարողանա զարգացնել և կիրառել իր բոլոր ընդունակություններն ու ուժերը...» (Маркс К., Энгельс Ф., Соч., т. 42, стр. 354), որին, համաձայն Ֆ. Էնգելսի, կարելի է հասնել «մասնավոր սեփականության ոչնչացման ճանապարհով, որի տեղը կզբաղեցնի ունեցվածքների ընդհանրությունը (այսինքն՝ հանրային սեփականությունը— Լ. Տ.)» (Նույն տեղը)։

Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը, խոսելով մասնավոր սեփականության ոչնչացման և հանրային սեփականության հաստատման մասին, ամենևին էլ նկատի չեն ունեցել պետական և գրեթե նրան հավասարեցված կոլտնտեսային սեփականության անբաժան տիրապետությունը։ Նույնիսկ Վ. Ի. Լենինը դա չէր կարող ենթադրել։ Մինչդեռ սեփականության հիշյալ ձևերն էլ դարձան սոցիալիզմի ստալինյան մոդելի տնտեսական հենասյուները։ Սեփականության պետական մոնոպոլ ձևը ծնեց խիստ կենտրոնացված հիերարխիկ իշխանություն՝ հակադեմոկրատական և հակահումանիստական սկզբունքներով։ Այդ հասարակությունը շատ ավելի նման էր ֆեոդալական միջնադարյան իրականությանը, քան առնչություն ուներ սոցիալիզմի դասական ըմբռնման հետ։ Եվ պատահական չէ, որ բազմակացութաձև նէպի պատմական շրջանը (1921—1929 թթ.) ԽՍՀՄ պատմության մեջ մտավ որպես նրա ամենադեմոկրատական զարգացման ժամանակաշրջան։

Սոցիալիստական երկրների ներկա վիճակը, նրանց ռեֆորմների պրակտիկան ցույց են տալիս, որ տեղի է ունենում անցում դեպի սեփականության հասարակական ձևերի բազմազանություն։ Իր իրավունքների մեջ է վերահաստատվում պլանակարգավորիչ սոցիալիստական շուկան։ Իսկ դիրեկտիվ պլանավորումն աստիճանաբար վերածվում է «ինդուկտիվ ծրագրավորման»։ Սակայն, մեր համոզմամբ, չի լինի համապարփակ վերադարձ դեպի մասնավոր սեփականություն, թեկուզև նրա առանձին տարրեր «կներծծվեն», անկասկած, սոցիալիզմի օրգանիզմի մեջ։ Ինչպես ցույց են տալիս կապիտալիստական զարգացած երկրների տնտեսական իրականությունը, տարազգային կորպորացիաների սեփականության հանրայնացման չտեսնված բարձր մակարդակը, գալիքում, հնարավոր է, այդ երկրներում կառաջանա սեփականության ձևերի փոփոխության հարց։ Այսօր «զարգացած կապիտալիզմը,— իրավամբ նկատում է ակադեմիկոս Օ. Տ. Բոգոմոլովը,— էվոլյուցիայի է ենթարկվում դեպի սոցիալիստական շատ սկզբունքների պրակտիկ իրականացման կողմը» (Богомолов О. Меняющийся облик социализма.— «Коммунист». № 11, 1989, стр. 35)։ Այնտեղ, ավելին, մեր կարծիքով, ծնվում է (կամ արդեն ծնվել է) «ուլտրաիմպերիալիզմի» որոշակի տիպ։

Այսօր մենք ստիպված ենք արձանագրելու, որ երկրի ընդհանուր հետամնացությունը և սոցիալիզմի ստալինյան ձևախեղումները հնարավորություն չտվեցին նրան «իսկույնևեթ անելու այնպիսի առաջընթաց քայլ, որն



արդարացներ սոցիալիստների կանխատեսումները, որը հնարավորություն տար նրանց հսկայական արագությամբ զարգացնելու արտադրողական ուժերը, զարգացնելու այն բոլոր հնարավորությունները, որոնք կգոյացնեին սոցիալիզմ, ակնառու կերպով, ակներևորեն ապացուցելու յուրաքանչյուրին ու ամենքին, որ սոցիալիզմի մեջ թաքնված են հսկայական ուժեր և որ մարդկությունն այժմ անցել է զարգացման նոր, արտասովոր փայլուն հնարավորություններ բերող ստադիայի» (Լենին Վ. Ի., ԵԼԺ, հ. 45, էջ 475)։

Վերակառուցումը, որ սոցիալիզմին հաղորդելու է երկրորդ շնչառություն, սոցիալիստական իդեալին իրականություն դառնալու հնարավորություն է ընձեռել։ Պահը բաց թողնելը կործանարար է։ Վերակառուցումը նշանակում է ոչ միայն գիտատեխնոլոգիական հեղաշրջում արդյունաբերության մեջ, այլև սոցիալիստական կոոպերացիայի լայն զարգացում հասարակական կյանքի տարբեր ոլորտներում և, առաջին հերթին, գյուղատնտեսության բնագավառում։ Շնորհիվ վերակառուցման, որն իր շատ հատկանիշներով ու առանձնահատկություններով հիշեցնում է նէպ-ը, իրոք, ինչպես քսանական թվականներին, այժմ էլ «կոոպերացիան մեզանում միանգամայն բացառիկ նշանակություն է ստանում» (ԵԼԺ, հ. 45, էջ 436)։ Լենինի մտահղացմամբ սոցիալիզմը հենց քաղաքակիրթ կոոպերատորների հասարակությունն է։ Ըստ նրա «արտադրության միջոցների հանրային սեփականության ժամանակ... քաղաքակրթված կոոպերատորների հասարակարգը հենց սոցիալիզմի հասարակարգն է» (Նույն տեղը, էջ 441), և «կոոպերացիան մեր պայմաններում միշտ և ամենուրեք համընկնում է սոցիալիզմի հետ» (Նույն տեղը, էջ 443)։ Այժմ խնդիրը կոոպերացիայի անսպառ հնարավորությունները նոր կերպարանք ստացող սոցիալիզմի օրգանիզմի մեջ ներառելն է, նրա շարժիչ ուժերից մեկը դարձնելը։

Վերակառուցումը միաժամանակ սոցիալիզմին թույլ է տալիս կոնվերգենցիայի մեջ մտնել կապիտալիզմի հետ։ Եվ այսօր ոչ միայն կապիտալիստական երկրներում են ծնվում իրենց էությամբ սոցիալիստական երևույթներ, զարգացման սոցիալիստական որոշակի միտումներ, այլև սոցիալիզմն է դառնում պլյուրալիստական։ Առաջին հերթին ծնվում է (նէպի նմանությամբ) պլյուրալիստական էկոնոմիկա (չեն բացառվում «խառը» տնտեսաձևերը), որը կդառնա քաղաքական ու հոգևոր (գաղափարական) պլյուրալիզմի անշրջելիության հիմքը։

Մարդկության սոցիալիստական իդեալը, մեր պատկերացմամբ, առաջին հերթին ենթադրում է օտարման (ինչպես տնտեսական, այնպես էլ սոցիալ-քաղաքական) պրոբլեմի լուծում, որը մինչև վերջերս սոցիալիզմի համար կա՛մ մեկընդմիշտ լուծված էր համարվում, կա՛մ նրան ոչ բնորոշ։ Սակայն սոցիալիզմի ճգնաժամը և նրա վերակառուցման անհրաժեշտությունը մերժեցին նման վերացական-ջատագովական ըմբռնումը։ Երիտասարդ Մարքսը նկատում էր, որ հակամարտ հասարակության պայմաններում այն, ինչը բնորոշ է կենդանուն, դառնում է մարդու վիճակը, իսկ ինչը մարդկային է, վերածվում է նրան, ինչը բնորոշ է կենդանուն, որ բանվորը միայն աշխատանքից դուրս է «ինքն իր հետ զգում», իսկ աշխատանքի պրոցեսում իրեն զգում է «կտրված ինքն իրենից» (տե՛ս Маркс К., Энгельс Ф. Из ранних произведений, стр. 563—564)։

Եվ իրոք, չէ որ օտարումը սոցիալական այն պրոցեսն է, երբ մարդկային գործունեությունը և նրա արդյունքներն ուղղվում են անձի դեմ որպես նրան իշխող և թշնամի ուժ։ «Սոցիալական գործունեության այդ ամրակայումը,— գրում են Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը,— մեր սեփական արդյունքի այդ համախմբումը մի ինչ-որ իրային, մեզ իշխող ուժի մեջ, որը դուրս է գալիս մեր հսկողությունից, հակառակվում է մեր սպասումներին և ի չիք դարձնում մեր հաշիվները, այդ ուժն ամբողջ նախընթաց պատմական զարգացման գլխավոր մոմենտներից մեկն է» (Մարքս Կ., Էնգելս Ֆ. Երկեր, հ. 3, Ե., 1987, էջ 40)։ Որպես այդպիսի «մեզ իշխող» համահավաք ուժ հանդես է գալիս այժմ գոյություն ունեցող սոցիալիստական վարչահրամայական պետականությունը։ Պարզ է, որ օտարման հաղթահարումն իր բոլոր դրսևորումներով էս պատմական պրոցես է, որն անմիջականորեն բխում է սոցիալիզմի դեմոկրատացումից և տեղի է ունենում նոր հասարակության մարքսիստական իդեալի իրականացման ընթացքում։ Համաձայն Մարքսի, առաջին խոչընդոտն այստեղ մասնավոր սեփականությունն է։ Նա գրում է. «մասնա-

որ «30-ական թվականներին լենինյան ազգային քաղաքականությունը ենթարկվեց շատ կոպիտ խեղաթյուրումների և ձևախեղումների», ճիշտ է, որ «դրանք իրենց վրա զգացին բոլոր ժողովուրդները» (տե՛ս «Խորհրդային Հայաստան», 31 մայիսի 1989 թ.), սակայն ի՞նչ է, չընդունե՞լ առանձին ժողովուրդների նկատմամբ թույլ տրված սխալները մինչև 30-ական թվականները։ Ի՞նչ է, սահմանափակե՞լ հրապարակայնությունը։ Այդ դեպքում ո՞ւր կմնա ազգերի այն իրավահավասարությունը, որի մասին խոսում էր Վ. Ի. Լենինը. «Պետք է ազգերի իրավահավասարություն անցկացնել՝ ազդարարել, ձևակերպել ու իրագործել բոլոր ազգերի հավասար «իրավունքներ» (ԵԼԺ, հ. 30, էջ 160)։

Այնուհանդերձ, էականն այն է, որ ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարն իր որոշման մեջ արձանագրեց, որ Լենինի առաջ քաշած ազգային ինքնորոշման սկզբունքը, որպես ԽՍՀ Միությունում հանրապետությունների կամավոր միավորման անկյունաքար, պետք է վերականգնվի դրա իսկական նշանակությամբ և ապահովվի պատշաճ դեմոկրատական իրավական երաշխիքներով։ Այսպիսի դիրքորոշումը ԽՄԿԿ-ն ազգային քաղաքականության իր պլատֆորմում որակեց որպես բացառիկ կարևոր։ Իրոք, սոցիալիզմի արդիականացման պատմական շանսի այս փուլում վերածնվում է սոցիալիզմը «մարդկային կերպարանքով», որի իդեալը «ոչ թե մեռցնող համանմանեցումն է, այլ լիարյուն և դինամիկ միասնությունը ազգային բազմազանությամբ» (ԽՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի նյութերը, Ե., 1988, էջ 185)։

Կարծես թե Վ. Ի. Լենինը վերակառուցումը նկատի ուներ, երբ գրում էր, որ «հետևողական, այսինքն՝ սոցիալիստական դեմոկրատիան կազդարարի, կձևակերպի և կիրագործի այդ իրավունքը (իրավահավասարությունը՝ ժողովուրդների ազգային պետություն ունենալու իրավունքը— Լ. Շ.), առանց որի ճանապարհ չկա դեպի ազգերի լիակատար կամավոր մերձեցումը և միավորումը (ընդգծումը մերն է— Լ. Շ., ԵԼԺ, հ. 30, էջ 160)։

Ինչպես 20-ական թվականների սկզբներին, երբ երկիրը նէպի պատմական ժամանակաշրջանն էր թևակոխում և առանց կուլտուրական հեղափոխության հնարավոր չէր սոցիալիզմի հետագա առաջընթացը, այնպես էլ այժմ, վերակառուցման գործնական իրականացման փուլում, նորից «ծանրության կենտրոն է դառնում կուլտուրականությունը» (Լենին Վ. Ի., ԵԼԺ, հ. 45, էջ 444)։ Մանավանդ, երբ լճացման տարիներն ապացուցեցին հոգևոր բնագավառի նկատմամբ «մնացորդային» մոտեցման ողբերգականությունը, նորից խնդիր է դրվում համառորեն յուրացնել մարդկության քաղաքակրթության բոլոր դրական ձեռքբերումները։

«Ժամանակակից կրթված մարդու» լենինյան իդեալը, կարելի է ասել, դառնում է նորացող սոցիալիզմի իդեալը։ Բազմազգ Խորհրդային Միությունն այս ասպարեզում ունի չօգտագործված բացառիկ հարուստ պոտենցիալ, որը կարող է իրականություն դառնալ միայն իրավական սոցիալիստական պետության, խորհրդային քաղաքացիական հասարակության պայմաններում։ Ակներև է, որ մենք ականատեսն ու մասնակիցն ենք այն իրողության, որ համաշխարհային պատմությունը նոր շրջադարձ է կատարում։ Գուցեև դա սկիզբն է այն ուղու, որը, իրոք, կտանի դեպի սոցիալիստական արդարության հասարակություն և, ի վերջո, կստեղծվի «մի ասոցիացիա, որի մեջ յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է»։

# ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՊՐՈՑԵՍԻ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ ԵՎ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՓԱՍՏԱՐԿՄԱՆ ԼՐԻՎՈՒԹՅՈՒՆԸ

Հ. ՇԱՔԱՐՅԱՆ

ԱՄԲՈՂՋ ԳՈՅԻ ՀԻՄՔԵՐԻ ՈՒ ԷՈՒԹՅԱՆ որոնումների ընթացքում փիլիսոփայության պատմականորեն առաջ եկած բաժանումը հակադիր ուղղությունների ոչ միայն տեսականորեն «օրինականացրեց» մարդկային կեցության սոցիալ-աշխարհայացքային տարասեռությունը, այլև կարծես իրենով սքողեց բուն փիլիսոփայական պրոցեսի **միասնությունը**, նրա պրոբլեմատիկան, կառուցվածքային ու գործառական որոշակիությունները: Այլ կերպ չես բացատրի, դիցուք, Հեգելի կողմից մատերիալիզմի «վտարումը» փիլիսոփայական տաճարից կամ այն ֆիզիկական հաշվեհարդարը, որ Պլատոնը սարքեց Դեմոկրիտի ժառանգության հանդեպ: Այժմյան փիլիսոփայական ուսմունքներն էլ հեռու չեն հակադիր վարդապետություններն անհեթեթություն հայտարարելուց: Դեռ ավելին, փիլիսոփայության զարգացման բնականոն հետևանքը՝ նրա բաժանվելը իմացաբանականի, գոյաբանականի, տրամաբանականի, արժեքաբանականի, հերմենևտիկականի և այլ ասպեկտների, չխոսելով դեռ սրանց բազմազան դրսևորումների մասին փիլիսոփայական տարբեր դպրոցներում, ինչպիսիք են, ասենք, պոզիտիվիստական, էկզիստենցիալիստական, ֆենոմենոլոգիական, մատերիալիստական, «գիտա»-մատերիալիստական կամ այլևայլ հոսանքներում, է՛լ ավելի խորացրեց փիլիսոփայական մտածողության միասնականության պրոբլեմը և նրա գործառման օրինաչափությունների ընդհանրությունը:

Փիլիսոփայական գիտելիքի հենց այդպիսի բազմադիմությունն է, որ մասնավորապես մեր դարաշրջանում այդքան կրքոտ կերպով քան երբևէ պայմանավորում է փիլիսոփայնության կառուցվածքային ու գործառական տարրերի միմյանց հակադրելը, որն իր հերթին չի կարող չթողնել նրա առարկայի միասնականության, նրա լեզվի, փիլիսոփայական գիտելիքի ծագումնաբանության ու հիմնավորման եղանակների կորստյան տպավորություն: Արդյոք այդ հանգամանքը չի՞ ծնել «չկա փիլիսոփայություն, կան միայն փիլիսոփաներ» նշանավոր ասույթը (Encyclopèdie Française, Vol. XIX, p. 19.26):

Փիլիսոփայության մեջ նման իրավիճակը, բնականաբար, չէր կարող չհարվածել նրա տրամաբանական-մեթոդաբանական հեղինակությանը գիտատեխնական շըրջաններում և կասկածներ չհարուցել այժմյան մարդկային փորձի բանական կազմակերպման գործում նրա արժեքային-աշխարհայացքային հնարավորությունների նկատմամբ: Այդ հակափիլիսոփայական տրամադրությունը դրսևորվեց ամենաբազմազան ձևերով՝ սկսած ժամանակակից գիտության և առհասարակ հասարակության մեջ փիլիսոփայական գիտելիքի գիտաաշխարհայացքային նշանակության հախուռն ժխտումից, վերջացրած փիլիսոփայության, որպես գիտառացիոնալ համակարգի, դիցաբանության և մարդու կեցության կրոնական իմաստավորման միջև սահմանների համահարթմամբ (տե՛ս **П. Фейерабенд**. Избранные труды по методологии науки. М., «Прогресс», 1986):

Անշուշտ, պետք է վերանալ այսպես կոչված հակագոյաբանական, զուտ գիտաբանական կամ հենց միայն արժեքաբանական փիլիսոփայական վարդապետություն-

---

*ՇԱՔԱՐՅԱՆ ՀՐԱՉԻԿ ԳՐԻԳՈՐԻ— Երևանի պետական համալսարանի դիալեկտիկական մատերիալիզմի և տրամաբանության ամբիոնի վարիչ, փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր։*

թյունը թերի ճշմարտություն է՝ այս ամենն իր մեջ պնդում է պարունակում ճշմարտության արժեքային ծանրաբեռնվածության մասին, ինչքան էլ որ այն իր տրամաբանական իմացաբանական կեղևի մեջ չեզոք երևա:

Շատ ավելի սքողված և հենց այդ պատճառով էլ դժվարապացուցելի է արժեքայինի իմացաբանական կարևորությունը: Դժվարությունը նախ և առաջ արժեքային դատողությունների իմացաբանական կառուցվածքի բարդության մեջ է: Բանն այն է, որ սոցիալ-արժեքային հոգևոր երևույթներում (սոցիալ-աշխարհայացքային գիտելիքներում, բարոյագեղագիտական սկզբունքներում և այլուր) արտացոլումը **երկակի բնույթ** է ընդունում. արտացոլվում են ոչ միայն տվյալ առարկայական իրողությունը, այլև նրա վերաբերյալ իդեալները, շահերը, ցանկությունները, անհատների, սոցիալական խմբերի, իր իսկ՝ հասարակության նպատակները: Այլ կերպ ասած, եթե ընդհանրապես ամեն մի արտացոլում սկզբունքորեն ենթադրում է միաժամանակ նաև ինքնաարտացոլում, ապա սոցիալ-արժեքային երևույթների մեջ արտացոլումն ամենից առաջ ինքնաարտացոլում է, ինչպես և ամեն մի գնահատական միաժամանակ ինքնագնահատական է: Դա նշանակում է, որ մարդկային արտացոլման մեջ արժեքանական տարրը ոչ միայն ելակետային է, այլև հանդես է գալիս որպես համակարգակազմիչ ուժ իրականության արժեհմացաբանական յուրացման և նույնիսկ ամբողջ մարդկային գործունեության մեջ: Այդ միտումն ավելի վառ կերպով է դրսևորվում փաստարկման մեջ, մանավանդ փիլիսոփայական փաստարկման, որը վերջինիս դարձնում է ավելի շատ արժեքային, քան տրամաբանական-իմացաբանական կատեգորիա:

Բոլոր դեպքերում փիլիսոփայական գիտելիքի կազմավորման, հիմնավորման ու փոխակերպման մեջ փիլիսոփայական փաստարկման լրիվությունն ամենից առաջ ենթադրում է արժեքային և տրամաբանական-իմացաբանական գործողությունների միասնություն:

Փիլիսոփայական ռեֆլեքսիայի վերը նշված առարկայական և ֆունկցիոնալ բարդացումը նշանակում է նաև իր իսկ փիլիսոփայական փաստարկման ապարատի հարստացում: Եվ, ընդհանրապես, միայն գոյաբանական, իմացաբանական կամ տրամաբանամեթոդաբանական փաստարկներով գործառելը փիլիսոփայական գիտելիքի կազմավորման կամ հիմնավորման մեջ հակադարձ կերպով հավասարազոր է փիլիսոփայականը միակողմանիորեն մեկի կամ մյուսի առարկայական կամ ֆունկցիոնալ որոշակիությանը հանգեցնելուն, այսինքն՝ միավորելուն, հետևաբար և նրա էությունն աղավաղելուն: Ուստի փիլիսոփայական փաստարկման լրիվությունը ենթադրում է իր իսկ փիլիսոփայական գիտելիքի լրիվություն, նրա կառուցվածքային և ֆունկցիոնալ տարրերի միասնություն:

Վերջապես, փիլիսոփայական փաստարկման լրիվությունը նշանակում է փիլիսոփայական ռեֆլեքսիայի մակարդակների գործառման միասնություն, իսկ այդ պատճառով էլ նաև նրանց փաստարկային հնարավորությունների գործառման միասնություն: Արդեն իսկ փաստարկային պոտենցիալի անհամաչափ բաշխվածությունը փիլիսոփայական ռեֆլեքսիայի մակարդակների միջև, հատկապես արժեքային ընդգծված ուղղվածությունը սովորական փիլիսոփայության մեջ, որը պայմանավորված է նրա ծայրահեղ «մոտիկությամբ» մարդկանց առօրեական հետաքրքրություններին, ինչպես նաև բուն փիլիսոփայական մակարդակում փաստարկման տրամաբանական գործողությունների գերակշռությունը և վերջինիս հետ աշխարհայացքային-արժեքային գործոնների միանալը փիլիսոփայական ռեֆլեքսիայի մետամակարդակում ենթադրում են դրանց փոխադարձ լրացում՝ ապահովելու համար փիլիսոփայության, որպես գիտության և մարդկային փորձը աշխարհայացքային իմաստով կազմակերպող ռացիոնալ մի համակարգի, գործառությունը:

Այնուհետև, փիլիսոփայական գիտելիքի կառուցվածքային գործառական միասնությունը (իսկ դա կնշանակի նաև փաստարկային հնարավորությունների միասնություն) հուսալի հիմք է տարասեռ փիլիսոփայական դպրոցների ներկայացուցիչների երկխոսության ու փոխըմբռնման համար: Ավելին, գործողության այդ միասնական ասպարեզը ընդլայնվում ու խորանում է մարդկային պրակտիկայի հետագա ինտերնացիոնալացմամբ և փիլիսոփայական մտածողության ազգային սահմանազատումների մեղմացմամբ: Այդպիսի միասնական գոյաբանական հիմքի՝ իբրև միասնական փիլիսոփայական ռեֆլեքսիայի անհրաժեշտ, բայց ոչ բավարար նախադրյալի առկայությունից բացի փիլիսոփայական առաջաբեմում ի հայտ եկած այն նոր գլոբալ





հոգսերն ու շահերը, որոնք միավորում են մարդկությանը, կարող են բարենպաստ գործոն ծառայել առարկայական իրականության շատ թե քիչ ադեկվատ արտացոլման արժեքային բնույթն ապահովելու համար: Այլ կերպ ասած՝ փիլիսոփայության առարկայի հետագա «ինտերնացիոնալացումը» և այդ հիման վրա մարդկային ցեղի արժեքային միավորման մի նոր մակարդակի, այն է՝ արժեքային-իմացաբանական նոր սուբյեկտի հայտնվելը ենթադրում է երկրային քաղաքակրթության զարգացման մեջ նույնպես մի նոր՝ ավելի շուտ միավորող, քան տարանջատող կարգավիճակ:

Նման կառուցվածքային-գործառական տեղաշարժերը փիլիսոփայական աշխարհում, առանձնապես փաստարկման համար, նշանակում են նրա դերի աննախադեպ զորեղացում փիլիսոփայական գիտելիքի գեներացիայի գործում: Հազիվ թե կասկած հարուցի այն փաստը, որ ավանդական փիլիսոփայության պրակտիկայում փիլիսոփայական գիտելիքի փաստարկային հնարավորությունները գործել են, Հ. Ռայխենբախի խոսքերով ասած, ավելի շուտ արդարացման, քան հայտնագործման համատեքստում: Փիլիսոփայության առարկայի և սուբյեկտի հետագա «ինտերնացիոնալացումը» նշանակում է փիլիսոփայական փաստարկման մեջ ապացուցման՝ որպես փիլիսոփայական գիտելիքի համակարգային կազմակերպումն ուժեղացնելու տրամաբանական միջոցի, դերի բարձրացում:

---

# ՏԻՐԱՊԵՏԵՆՔ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴԻ ՁԵՎԵՐԻՆ

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ արդի փուլը առանձնահատուկ ու կարևոր է վերակառուցման պրոցեսի խորացմամբ, մարդկանց հասարակական-քաղաքական աննախադեպ ակտիվությամբ: Վերակառուցումը հիրավի դարձել է համաժողովրդական գործ: Այսպիսի պայմաններում կուսակցական կազմակերպությունների ուժերի համախմբման կարևորագույն գործոն են ԽՄԿԿ XXVII համագումարի և XIX կոնֆերանսի, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումի որոշումները: Ելնելով ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թվականի ապրիլյան պլենումի դիրքորոշումից, ժողովրդական դեպուտատների ընտրությունների, ինչպես նաև ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարի արդյունքներից՝ մենք պետք է հստակորեն շեշտենք, որ ժողովուրդը արտահայտվեց ավելի վճռական գործողությունների, վերակառուցման ավելի խորացման օգտին՝ նախ և առաջ սոցիալ-տնտեսական ոլորտում: Առաջին պլանի վրա ամբողջ սրությամբ դրվեցին ազգային հարցը, ազգամիջյան հարաբերություններում տարիներ ի վեր կուտակված պրոբլեմները:

Վերակառուցումը մտել է իր ամենաբարդ շրջանը: Դա դժվարին ու աշխատատար պրոցես է: Դյուրին չի ընթանում սոցիալ-տնտեսական ոլորտի նորացման պրոցեսը: Հասարակական-քաղաքական ռեալ իրադրության փոփոխությունը տագնապի մեջ է գցել առանձին անձանց: Շատերս չենք հասցնում հավասարվել պրոցեսի արագացմանը, և դրա մեջ տեսնում ենք վտանգավոր շատ կողմեր: Բայց և պարտավոր ենք հիշել, որ ինչքան վտանգավոր  է առաջ ընկնելը, այնքան էլ վտանգավոր է վերակառուցման պրոցեսի արգելակումը: Այս ամենը, անշուշտ, պահանջում է էականորեն փոխել կուսակցական-քաղաքական աշխատանքի մեթոդները, նրա բովանդակությունը, արդի պայմաններում տիրապետել քաղաքական աշխատանքի ձևերին ու մեթոդներին:

Կուսշրջկոմի և սկզբնական կազմակերպությունների համար ի՞նչ է նշանակում տիրապետել քաղաքական աշխատանքի մեթոդներին ու ձևերին: Այդ նշանակում է, որ մեր տեսադաշտում պետք է պահենք հասարակության կյանքի բոլոր կողմերը: Եվ եթե հիմա լսվում են առանձին ձայներ, թե կուսկազմակերպությունների գործը մնում է միայն քաղաքական լուսավորությունը, ապա պետք է ամենավճռական կերպով մերժենք այդպիսի պատկերացումները: Այն ամենը, ինչը վերաբերում է աշխատավորների կյանքին, նրանց աշխատանքի պայմաններին, կենցաղին, դաստիարակությանը, էկոնոմիկայի  զարգացմանը,  կուսկազմակերպությունների  ուղղակի գործն է: Սա մեր սկզբունքային, կարևոր  դիրքորոշումն է:

Մեզ համար գլխավորն այն է, որ կուսակցության յուրաքանչյուր անդամ գիտակցորեն ըմբռնի իր մեծ պատասխանատվությունը վերակառուցման կուրսի իրականացման, իր վրա դրված կոնկրետ պարտականությունների կատարման համար: Յուրաքանչյուր կուսկազմակերպություն պետք է որոշի իր խնդիրները, նշի դրանց լուծման ուղիները: Մեր շրջանում եղած պրոբլեմները պահանջում են ամբողջ շրջանի կուսկազմակերպության ջանքերի մոբիլիզացում, դրանց արա՛գ լուծման համար հատակ պատասխանատվություն:

ԽՄԿԿ Կենտկոմի 1989 թվականի ապրիլյան պլենումը մեկ անգամ ևս սրեց կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը էկոնոմիկայի, սոցիալական ոլորտի զարգացման քաղաքական ղեկավարման մակարդակը վճռականորեն բարձ-

---

*ՊԵՏՐՈՍՅԱՆ ՎԼԱԴԻՄԻՐ ԳԵՎՈՐԳԻ— ՀԿԿ Սպանդարյանի շրջկոմի առաջին քարտուղար, պատմական գիտությունների դոկտոր:*



րացնելու վրա: Հարկ է նշել, որ այս կարևորագույն ասպարեզում շրջանի ձեռնար-
կությունների ձեռքբերումները դեռևս թույլ են ներազդում մարդկանց հոգսերի ու պա-
հանջմունքների ռեալ բավարարման վրա: Ինչու՞ շրջկոմի, կուսկազմակերպություն-
ների շատ միջոցառումներ սպասված արդյունքը չեն տալիս: Իմ կարծիքով, պատաս-
խանը մեկն է. ղեկավարման վարչահրամայական մեթոդից քաղաքական մեթոդին և
պարտականությունների սահմանազատման անցնելու ժամանակակից բարդ փուլում
մեզ դեռևս չի հաջողվել բարձրացնել շրջանի կուսակցական, խորհրդային և տնտե-
սական աշխատողների պատասխանատվությունը տնտեսության զարգացման հա-
մար: Այս մասին պետք է անկեղծորեն ասել և շեշտել, որ չի դրսևորվում նաև ան-
հրաժեշտ նախաձեռնություն:

Արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարման գործում շրջկոմը ավելի
ու ավելի է գործադրում քաղաքական ներազդեցության մեթոդը, փորձում է խսկապես
սահմանազատել պարտականությունները: Այստեղ ելնում ենք մի պարզ ճշմարտու-
թյունից. յուրաքանչյուր արտադրական ձեռնարկության ղեկավար իրեն հաշիվ է
տալիս, որ զարգացման ներկա փուլում, երբ գործում է ղեկավարների ընտրության
մեխանիզմը, այլևս առաջվա նման հնարավոր չէ կա՛մ հավելագրում կատարել,
կա՛մ էլ զանազան օբյեկտիվ ու սուբյեկտիվ պատճառաբանություններով արդարաց-
նել առաջադրանքների թերակատարումը: Կուսկոնֆերանսից հետո մենք շրջկոմում
վերոհիշյալ հարցերի շուրջ ունեցել ենք սկզբունքային խոսակցություն: Եվ պետք է
ասել, որ ձեռնարկությունների ղեկավարների և կուսկազմակերպությունների համա-
գործակցված աշխատանքի, պարտականությունների նկատմամբ պատասխանատու
վերաբերմունքի շնորհիվ շրջանը զգալիորեն բարելավել է իր արտադրական ցու-
ցանիշները: Խրախուսելի է գինու գործարանի, Կ. Ցետկինի անվան և «Գառնուն»
կարի արտադրամիավորումների, ՀԿԿ Կենտկոմի  հրատարակչության  կատարած
դրական աշխատանքը: Նրանց կոլեկտիվները բարձր պատասխանատվությամբ են
վերաբերվում իրենց ուղղակի պարտականություններին: Այն ամենը, ինչին հասել ենք
արտադրական ձեռնարկություններում քաղաքական ղեկավարման մեթոդների կի-
րառմամբ, հուսալի հիմք են, ասելու, որ ճիշտ ուղու վրա ենք և հարկավոր է այն
ավելի ամրապնդել:

Սակայն, դժբախտաբար, այդ նույնը մեզ չհաջողվեց շինարարական կազմա-
կերպությունների հետ տարվող աշխատանքում: Այստեղ մեր քաղաքական ներգոր-
ծության միջոցները առայժմ արդյունավետ չեն: Բանն այն չէ, որ նրանք վատ են
կատարում իրենց պարտականությունները, այլ նաև այն, որ շրջկոմը միանգամայն
անբավարար է զբաղվում նրանց կուսկազմակերպությունների ղեկավարմամբ: Ահա
մի քանի տվյալ. «Հայհիդրոէներգոշինի» Երևանի շինվարչությունը 1989 թվականի
առաջին կիսամյակի պլանները կատարել է 74,4 տոկոսով, ԽՍՀՄ էլեկտրատեխնի-
կական արդյունաբերության մինիստրության հայկական շինվարչությունը՝ 88, Եր-
քաղէլեկտրատրանսպորտի շինվարչությունը՝ 72,7 տոկոսով: Խիստ դանդաղ է ըն-
թանում շրջանի սոցկուլտօբյեկտների շինարարությունը: Դեռևս 1988 թվականին
նախատեսված 14 օբյեկտներից շահագործման է հանձնվել միայն 4-ը: Եթե փոր-
ձենք վերլուծել թերակատարումների պատճառները, ապա առաջին պլանի վրա են
մղվում անպատասխանատվությունը,  անկազմակերպվածությունը,  կարգուկանոնի
բացակայությունը: Մենք գիտակցում ենք, որ այս ամենում անչափ զգալի է նաև
շրջկոմի բռնած քննադատության չդիմացող դիրքորոշումը:

Այսօր խնդիրը դրված է անչափ որոշակի: Եթե կարողանում ենք լուծել մարդ-
կանց հուզող հարցերը, հոգալ նրանց սոցիալ-կենցաղային հոգսերը, նշանակում է
կկարողանանք նաև տիրապետել քաղաքական աշխատանքի մեթոդներին: Վերջ-
ներս, օրինակ, Կոնդի պրոբլեմը: Այն տասնյակ տարիներ կայուն տեղ է գրավել
շրջանի, քաղաքի և հանրապետության շատ ղեկավարների նախընտրական ելույթ-
ներում: Տրվել են խոստումներ, բայց ոչինչ չի արվել: Այդպիսի խոստում ինձ ևս
վիճակվեց տալ: Եվ, առիթից օգտվելով, ցանկանում եմ որոշակիորեն նշել Հայաս-
տանի կոմկուսի ղեկավարության և, առաջին հերթին, Կենտկոմի առաջին քարտու-
ղար Ս. Գ. Հարությունյանի անձնական ներդրումը Կոնդի պրոբլեմը գործնական ու-
ղու վրա տեղափոխելու գործում: Մեր խնդիրն է պարզճակատ դուրս գալ այդ կա-
պակցությամբ Կենտկոմի և Մինիստրների խորհրդի որոշումը կենսագործելիս: Կոնդի
առնչությամբ խոսքը վերածվեց գործի: Դա մեզ հնարավորություն է ընձեռում այն
խելացի օգտագործել քաղաքական աշխատանքում մեր դիրքերն ամրապնդելու հա-
մար:

Սակայն, դժբախտաբար, պրոբլեմները շատ ու շատ են: Այսօր ի՞նչ քաղա-
քական աշխատանքի մասին կարելի է խոսել, երբ ահա 2—3 ամիս է, ինչ Մարքսի

վարները, նրանց հետ նաև շրջկոմը կատարել էին բազմաթիվ վրիպումներ և հիմա, ինչպես ասում են, ինչ ցանել ես, այն էլ կհնձես:

Ի՞նչ էր հարկավոր ձեռնարկել: Զգացվում էր կուսակցական ընտրովի ակտիվի հեղինակության և դերի բարձրացման, կադրերի նկատմամբ սկզբունքային պահանջկոտության ուժեղացման անհրաժեշտություն: Շրջկոմի ղեկավարները, որոնք ևս, բնականաբար, պատասխանատու են միավորման վիճակի համար, սկսեցին սթափ գնահատել իրավիճակը: Միավորման ղեկավարների հետ արդեն սովորական դարձած հանդիպումները այլևս ոչինչ չէին տալիս: Հարկավոր էր վճռական քայլ կատարել, մարդկանց հետ անկեղծ երկխոսության գնալ: Չեմ թաքցնում, երկխոսությունը դժվար էր: Մարդիկ բարձրացնում էին իրենց հուզող բազմաթիվ հարցեր, իհարկե, նախապես իմանալով, որ դրանց մի մասը անլուծելի է: Հարկավոր էր ամեն ինչի մասին խոսել հրապարակայնորեն, ճշմարիտն ասելու համար նախ և առաջ քո միջից պետք է վերացնես հին մտածելակերպը, ընդհանուր դատողություններ անելու դատապարտված մեթոդը: Ահա այսպես աստիճանաբար, քայլ առ քայլ միավորման կուսկազմակերպությունը, ղեկավարները, շրջկոմի աշխատողները, թեև դժվարությամբ, բայց կարողացան առաջին քայլերը կատարել դրությունը կայունացնելու, մարդկանց հույզերն ու տագնապները հասկանալու և կիսելու ճանապարհին:

Իմ կարծիքով, իրադրությունը այստեղ կայունացնելու առաջին քայլերը ամրապնդելու, կուսակցական կազմակերպության նկատմամբ վստահությունը վերահաստատելու գործում կարևոր դեր խաղաց շրջկոմի բյուրոյի արտագնա նիստի հրավիրումը: Անշուշտ, մենք հակված չենք հնաբույր, լճացման տարիներից ժառանգություն ստացած արտագնա նիստերի պրակտիկան պահել պատվանդանի վրա, բայց այն գործնական խոսակցությունը, որ տեղի ունեցավ, կարծում եմ, անհետևանք չմնաց: Շրջկոմի բյուրոն յուրովի մոտեցավ խնդրին, իսկապես շահագրգիռ խոսակցությունն ուղղված էր միավորման ամենացավոտ կողմերին:

Կուսակցական- քաղաքական աշխատանքի ուժեղացման կարևորագույն պայմանը կուսակցության շարքերի համախմբումն է, կոմունիստների հեղինակության բարձրացումը: Այսօր մեր շրջանում գործում է 293 կուսակցական կազմակերպություն, որտեղ հաշվվում է 11.800 կոմունիստ: Անտարակույս, սա քաղաքական մեծ ուժ է: Եվ շատ կարևոր է, որպեսզի յուրաքանչյուր կազմակերպություն, լինի մեծ, թե փոքրաթիվ, գործի նպատակասլաց, որպեսզի բոլոր կոմունիստները զգան իրենց վրա դրված մեծ պատասխանատվությունը կուսակցության քաղաքականության իրականացման գործում: Իսկ դա մեծապես պայմանավորված է նաև կուսակցական նոր համալրման որակական կազմով:

Կուսշարքերի համալրման նկատմամբ մեր կողմից վերջին մի քանի ամիսներին ցույց տրված վերաբերմունքն ունի դրական միտում: Կուսակցության շարքերն են գալիս մարդիկ, որոնք իրենց հաշիվ են տալիս ներկա պայմաններում կոմունիստների առջև դրված պատասխանատվության համար: Ուրախանալ կարելի է, որ նրանց մեծամասնությունը իսկապես կուսակցության շարքերն է մտնում կոմունիստի հեղինակությունը իրենց վարքով, սկզբունքայնությամբ, թերությունների նկատմամբ անհաշտվողական վերաբերմունքով բարձրացնելու ազնիվ մղումներով:

Այդուհանդերձ հարկ է նշել, որ մեզ լուրջ անհանգստություն են պատճառում կուսակցությունից դուրս գալու փաստերը: Վերջին մեկ-երկու տարիներին կուսակցական կյանքից կտրվելու, անդամավճարները չմուծելու համար շրջանում կուսակցությունից վտարվել է 16 մարդ: Պարզվում է, որ նրանցից ոմանք կուսակցության մեջ ընդունվել են պատահականորեն, շահադիտական նպատակներով: ԽՄԿԿ շարքերից այդ անձանց դուրս գալով, բնականաբար, գործը շահում է: Բայց կան և փաստեր, երբ մարդը կուսակցությունից դուրս է մնում կա՛մ կուսակցության նկատմամբ հավատը կորցնելու, կա՛մ էլ մեզ համար խորթ ուժերի ազդեցության տակ ընկնելու պատճառով: Անշուշտ, սա մտահոգության առարկա է, և մենք պետք է լուրջ հետևություններ անենք: Դժբախտաբար, կան դեպքեր, երբ առանձին կուսանդամներ, անձնական շահերից ելնելով, ճնշում գործադրելու նպատակով, կուսշրջկոմ կամ վերադաս կուսակցական մարմիններին են հանձնում իրենց կուսակցական տոմսերը: Պետք է այս փաստերին սկզբունքային գնահատական տանք և վճռականորեն ազատվենք այն անձանցից, ովքեր իրենց գործելակերպով հեռանում են կուսակցության գծից և արատավորում կոմունիստի բարձր կոչումը:

Վերակառուցման անշրջելիության երաշխիքներից մեկը կադրային աշխատանքի դեմոկրատացումն է: Վերջին շրջանում մեր մի շարք հիմնարկ-ձեռնարկություններում ղեկավարները աշխատանքի են անցել ընտրության միջոցով: Մի քանի թեկ-



նածուներից ընտրություն է կատարվել Կ. Ցետկինի անվան կարի արտադրամիավորումում, Երքաղէլեկտրատրանսպորտի վարչությունում, Սոյուզվզրիվպրոմում, № 1 պոլիկլինիկայում, մանկավարժական ինստիտուտում, Էլեկտրամեխանիկական տեխնիկումում և այլն:

Միաժամանակ այստեղ չի կարելի չնկատել, որ ղեկավարների ընտրության ժամանակ (հատկապես առավել փոքր կոլեկտիվներում) մի շարք դեպքերում հաղթում է խմբակային էգոիզմը, «հարմար» թեկնածուին ձայն տալու միտումը: Ահա թե ինչու այդպիսի պարագայում չի կարելի պասիվ դիրքորոշում ունենալ, ամեն ինչ թողնել ինքնահոսի և խուսափել պաշտպանելու այն մարդկանց թեկնածությունը, որոնց մենք հավատում ենք ու վստահում: Այսպես, 1988 թ. փետրվարին տեղի ունեցավ շրջանի № 29 Արազու անվան դպրոցի դիրեկտորի ընտրությունը: Մի քանի թեկնածուների թվում էր նաև նույն դպրոցի ուսմասվար Գ. Գասպարյանը: Ըստ երևույթին ամեն ինչ արվել էր՝ մյուս թեկնածուներին մերժելու և բաց քվեարկությամբ Գասպարյանին դիրեկտոր ընտրելու համար: Թվում էր, որ ամեն ինչ կատարվել է դեմոկրատական ճանապարհով: Բայց կարճ ժամանակ անց հենց Գ. Գասպարյանը սկսեց ոտնահարել իրեն վստահություն հայտնած կոլեկտիվի իրավունքները: Ըստ էության նա մտածում էր, եթե ընտրել են, ուրեմն, տվել են նաև ամեն ինչի իրավունք, ընդհուպ մինչև՝ անվայել արտահայտությունների: Եվ հետևանքը եղավ այն, որ կոլեկտիվի բազմաթիվ ուսուցիչներ դիմեցին շրջկոմ, դատախազություն՝ պահանջելով քննարկել Գասպարյանի վարքագիծը, չմոռանալով նաև ընդգծել, որ ընտրության ժամանակ սխալվել են: Գասպարյանը կատարած անվայելուչ արարքի համար կարգապահական տույժի է ենթարկվել և նրա աշխատանքում մնալ-չմնալու հարցը քննարկման ընթացքում է:

«Մանկական աշխարհ» միավորումում ևս որոշվեց անցկացնել դիրեկտորի ընտրություն: Ի թիվս այլ թեկնածուների, քվեարկվում էր նաև Մ. Առաքելյանը: Վերջինիս հենց ժողովի ժամանակ տրված հարցը. «Դուք կուսակցական եք և երկու տարի ոչ մի տեղ չեք աշխատել: Ինչո՞վ եք բացատրում այդ, ի՞նչ միջոցներով եք ապրում»,— այդպես էլ մնաց անպատասխան: Գործի դրվեց ընտրությունը «կազմակերպելու» ծանոթ մեխանիզմը, և Մ. Առաքելյանը դարձավ դիրեկտոր: Կարճ ժամանակ անց վերը նշված հարցի հեղինակը ազատվեց աշխատանքից: 1989 թվականի մայիսի 30-ին շրջկոմի բյուրոն քննարկեց Մ. Առաքելյանի գործունեության վերաբերյալ «Մանկական աշխարհ» միավորման կուսկազմակերպության երեք անդամներից ստացված դիմումի ստուգման արդյունքները: Դիմումում նշված փաստերը համապատասխանում էին իրականությանը: Միավորման դիրեկտոր Մ. Առաքելյանը, ըստ էության, վարձահատույց լինելով այն ուժերին, որոնց օգնությամբ «ընտրվել էր» դիրեկտոր, հենց աշխատանքի առաջին օրից բռնել է խախտումներ կատարողներին հովանավորելու վտանգավոր դիրքորոշում: Հաշվի առնելով վերոհիշյալ փաստերը՝ շրջկոմի բյուրոն որոշեց Մ. Առաքելյանին չհաստատել միավորման դիրեկտորի պաշտոնում և հանձնարարեց առևտրի վարչությանը նրան տեղափոխել ցածր աշխատանքի:

Խոսելով կադրային քաղաքականության ներկա վիճակի մասին՝ հարկ է կարևորել նաև ղեկավարների հեղինակությունն ամրապնդելու, կադրերի սոցիալական պաշտպանվածությունն ապահովելու անհրաժեշտությունը: Այս ամենը մենք պետք է զուգորդենք բարձր պահանջկոտությամբ, սկզբունքայնությամբ, մարդկանց աշխատանքի արդյունքների ճիշտ գնահատմամբ: Այնտեղ, որտեղ կադրային փոփոխությունները հասունացել են, պետք է դրանք լուծենք՝ թույլ չտալով որևէ տատանում:

Կոմունիստական կուսակցության համար առաջնայինը եղել և մնում են լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրագործումը, ազգամիջյան հարաբերությունների կատարելագործումը: Թե որքանով է կարևոր լենինյան ազգային քաղաքականության անաղարտ կիրառումը, զգացինք հատկապես վերջին երկու տարվա ընթացքում: Դա առավել անհրաժեշտ է հատկապես հիմա, երբ այդ պրոբլեմները թափանցում են սոցիալ-տնտեսական, առավելապես հոգևոր ոլորտը: Ասենք նաև, որ սուր ազգային գունավորում են ստացել էկոլոգիական պրոբլեմները: Այս ամենը պարտավորեցնում է սկզբնական կուսկազմակերպություններին՝ վերոհիշյալ հարցերը պահել չթուլացող ուշադրության կենտրոնում, կատարելագործել մարդկանց հայրենասիրական, ինտերնացիոնալ դաստիարակությունը:

Մեր առօրյա լարված աշխատանքում և հատկապես ներկա պայմաններում ավելի ու ավելի ենք զգում լոզունգային դաստիարակության արատավոր հետևանքները: Տարիներ շարունակ հավատով կրկնել ենք. «Անխախտ է ԽՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը...», բայց քիչ բան արել դրա հաստատման համար: Ասա-

ծիս ապացույցը չէ՞, արդյոք, սումգայիթյան եղեռնը: Մենք այս մասին շրջանի կուս-
կազմակերպությունների միահամուռ կարծիքը հայտնեցինք շրջանային կուսկոնֆե-
րանսում: Ապացուցման կարիք չկա, որ խորհրդային հայրենասիրության, ժողովուրդ-
ների բարեկամության զգացումների դաստիարակությունը անհնար է առանց սոցիա-
լիզմի նվաճումների համոզիչ պրոպագանդման: Այստեղ հարկավոր է անկեղծորեն
ասել, որ մեր ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքում ամեն ինչ այնպես
չէ, ինչպես կցանկանայինք:

Գաղտնիք չէ՝ մենք սովորում ենք երկխոսություն աշխատավորական մասսա-
ների հետ մեր իրականության ամենաբարդ ու խճճված հարցերի շուրջ: Մենք պար-
տավոր ենք սովորելու հետ միասին ձեռք բերել մարդկանց համոզելու ունակու-
թյուն:

Այսօր, քան երբևէ, հատուկ վերաբերմունք է պահանջում երիտասարդության
դաստիարակությունը: Այստեղ նախկինում կիրառվող ձևերն ու մեթոդները վաղուց
իրենց սպառել են: Դրա հետ միասին մենք չպետք է մոռանանք, որ երիտասար-
դությունը չունի բավարար քաղաքական և կենսական փորձ: Այդ փորձի բացակա-
յությունը երիտասարդությանը հնարավորություն չի տալիս, ինչպես ասում են, գլուխ
հանել սոցիալական երևույթների հակասություններից: Միաժամանակ հարկ է չմո-
ռանալ, որ այսօրվա երիտասարդությունն էլ է փոխվում, նրա մի մասի վրա ակ-
տիվորեն ներգործում են մերժելի բարքերն ու սովորույթները: Դասադուլների փաս-
տերը թե՛ հանրակրթական դպրոցներում, թե՛ Խ. Աբովյանի անվան հայկական ման-
կավարժական ինստիտուտի առանձին ֆակուլտետներում, գործադուլներին, ոչ ֆոր-
մալ կազմակերպություններին առանձին երիտասարդների մասնակցությունը չպետք
է գնահատենք միայն որպես երիտասարդության շրջանում տարվող քաղաքական-
դաստիարակչական անբավարար աշխատանքի հետևանք: Այս խնդրին մենք պար-
տավոր ենք ավելի լրջորեն ու խորությամբ վերաբերվել:

Այստեղ հարցերի հարցը միակն է. որքանո՞վ ենք մենք թե՛ շրջկոմում և թե՛
կուսակցական կազմակերպություններում լրջորեն գնահատում իրավիճակը, որքա-
նո՞վ ենք նպաստում երիտասարդության շրջանում հաստատուն աշխարհայացքի ձե-
վավորմանը: Ինչպես «Ավիահամալիր» միավորումում, այնպես էլ մի շարք ուսում-
նական հաստատություններում հանդիպումները մեզ սովորեցրին, որ երիտասար-
դության հետ պետք է համարձակորեն գնալ երկխոսության, շփվել նրա հետ, լսել
նրան հուզող հարցերը, ինչքան էլ դրանք դառը լինեն, համբերատար, անկեղծ
զրույց ունենալ դրանց շուրջ:

Մենք բոլորս պետք է ձերբազատվենք այն մտայնությունից, երբ այսպես կոչ-
ված վտանգավոր հարցի հեղինակի մեջ անպայման փնտրել ենք գաղափարական
հակառակորդի, լավագույն դեպքում՝ այդ գաղափարների ազդեցության տակ գտնվո-
ղի: Որ դա այդպես չէ, կվկայեն միայն մի քանի փաստերի թվարկումները: Ծանր
երկրաշարժի հենց առաջին օրից աղետի գոտի մեկնած մեր շրջանի երիտասար-
դական խմբերը ուղղակի հրաշքներ գործեցին: Կամ ինչպե՞ս չհիշես մանկավարժա-
կան ինստիտուտի հարյուրավոր ուսանողների, որոնք ոչ միայն արյուն տվեցին վի-
րավորներին օգնելու համար, այլև հիվանդանոցներում գիշեր ու զոր խնամում էին
նրանց: Ինչպե՞ս չգնահատել շրջանի հարյուրավոր երիտասարդներին, որոնք պա-
րետային ժամի պայմաններում հերթապահում էին շրջանի փողոցներում, հասարա-
կական վայրերում և իրենց նպաստը բերեցին կարգ ու կանոնի պահպանման գոր-
ծում: Չենք կարող չնշել մեր արդյունաբերական ձեռնարկություններում աշխատող
բազմաթիվ երիտասարդների, որոնք մի քանի շաբաթ, կիրակի օրերին աշխատանքի
դուրս եկան գործադուլներից հասած վնասները վերականգնելու համար: Գովեստի
են արժանի մանկավարժական ինստիտուտի ուսանող շինարարները, որոնք ակտի-
վորեն մասնակցում են Ստեփանավանի և Կալինինոյի շրջաններում ավերված շինու-
թյունների վերականգնմանը: Հարկ է նշել, որ միայն 1989 թվականի անցած ամիս-
ներին 100 երիտասարդներ ընդունվել են կոմունիստական կուսակցության շարքերը:

Մենք հաճախ ենք լսում այն մասին, որ իբրև թե կոմերիտմիությունը սպառել է
իրեն և հարկավոր է ստեղծել այլտերնատիվ կազմակերպություններ: Այս հարցում
պետք է ունենանք որոշակի, միանշանակ դիրքորոշում: Իհարկե, երիտասարդու-
թյունը կարող է համախմբվել առանձին խմբերի՝ ըստ պրոֆեսիոնալ կամ սիրողա-
կան հետաքրքրությունների: Մենք պարտավոր ենք այս շարժումը ոչ միայն ողջու-
նել, այլև ըստ ամենայնի աջակցել դրան: Բայց եկեք չմոռանանք, որ կոմերիտմիու-
թյունը երիտասարդության միակ քաղաքական կազմակերպությունն է, որը սերտորեն
կապված է մեր կուսակցության նպատակների հետ: Հենց կոմերիտմիության շարքե-
րում են երիտասարդները կոփվել ու կոփվում գաղափարապես, ձեռք բերել ու բե-



րում համոզված քաղաքական մարտիկի հատկանիշներ, նախապատրաստվում կո-
մունիստ դառնալու համար: Կարելի է թվարկել բազմաթիվ կոմերիտական կազմա-
կերպությունների օրինակներ, որոնք հենց այդպես էլ դաստիարակում են իրենց ան-
դամներին, նրանց ուժերը նպատակամղում ընդհանուր գործի հաղթանակին: Նրանց
ավանգարդում են Կ. Ցետկինի անվան կարի արտադրամիավորման, Երևանի փոս-
տատան, «Հայարդնախագիծ» ինստիտուտի, մանկավարժական ինստիտուտի կոմե-
րիտական կազմակերպությունները:

Մեր ուշադրությունից չի կարող վրիպել նաև հետևյալը: Անցած 1988 թվականը
և այս տարվա իրադարձությունները վկայում են, որ ոչ ֆորմալ կազմակերպություն-
ները առանձնապես ազդեցություն ունեն սովորող երիտասարդության վրա: Դա
հատկապես զգացվում է Խ. Աբովյանի անվան հայկական պետական մանկավար-
ժական ինստիտուտի առանձին ֆակուլտետներում, Ռ. Մելիքյանի անվան երաժըշ-
տական ուսումնարանում: Ո՞րն է այդ ազդեցության հիմքը: Դատելով երիտասար-
դության առանձին խմբերի հետ ունեցած երկխոսությունից՝ գտնում ենք, որ դրա
հիմքը պատմության, հատկապես հայ ժողովրդի պատմության մի շարք կարևոր
հարցերին նրանց տեղյակ չլինելն է, քաղաքականության սկզբունքների հետ հաշվի
չնստելը: Հասարակական-քաղաքական կյանքի հարաճուն զարգացումը, աննախա-
դեպ կեռմանները, հրապարակայնության, դեմոկրատիայի խորացումը լայն հնարա-
վորություն ստեղծեցին, ավելի ճիշտ՝ խթան դարձան ինժեներատեխնիկական մտա-
վորականության, ոչ հումանիտար ֆակուլտետների սովորողների համար՝ ուսումնա-
սիրելու սեփական ժողովրդի պատմությունը: Մարդիկ պարզապես ուզում էին իմա-
նալ վերջապես ղարաբաղյան շարժման ծագման պատճառները: Կարծում եմ, միայն
ողջունել կարելի է նման հետաքրքրասիրությունը: Բայց հենց այստեղ էլ մենք մնա-
ցինք անշարժ վիճակում, ժամանակին մեր գաղափարախոսական ճակատի աշխա-
տողները, կուսակցական կազմակերպությունները չկարողացան ճիշտ գնահատել ի-
րավիճակը, չօգնեցին մարդկանց՝ ճշմարիտ դիրքերից ըմբռնելու պատմության հե-
տաքրքրող պրոբլեմները: Եվ այսպես, մեր դանդաղաշարժությունից, պասիվությու-
նից շտապեցին օգտվել նրանք, ովքեր փորձում էին պատմության կնճռոտ հարցերը
ներկայացնել ծուռ հայելու մեջ:

Իհարկե, նման վիճակը հետևանք է դպրոցում հայ ժողովրդի պատմության դա-
սավանդման անկատարության: Վերջերս շրջկոմը Խ. Աբովյանի անվան հայկա-
կան պետական մանկավարժական ինստիտուտի հայ ժողովրդի պատմության ամ-
բիոնի գիտնականների ու դասախոսների հետ ուսումնասիրեց այդ առարկայի դըր-
վածքը Սպանդարյանի շրջանի դպրոցներում: Դրությունը հուսադրող չէ: Հայ ժողո-
վրդի պատմության դասավանդման բարելավումը պետք է սկսել երեք հարցից՝
կայուն ծրագիր և դասագիրք ստեղծել, ավելացնել առարկային հատկացվող ժամերը
և ունենալ լավ ուսուցիչներ: Շրջկոմի բյուրոն ընդունված որոշմամբ այս և մի քանի
այլ հարցերի հրատապ լուծման նպատակով խնդիր է դրել հանրապետության ժող-
կրթության մինիստրության առջև՝ քննարկել դրանք: Մեր ուսումնասիրության ար-
դյունքներն ու առաջարկությունները ներկայացվել են նաև Հայաստանի կոմկուսի
Կենտկոմի գաղափարական հանձնաժողովին:

Մեր ծավալած քաղաքական աշխատանքը, որ հատկապես բացահայտվեց
նախընտրական կամպանիայի ժամանակ, կաղում է հին, իր ժամանակն ապրած
մեթոդների հետևանքով: Այսօր քաղաքական աշխատանքի առաջնահերթ խնդիրն է՝
կարողանալ ապահովել հասարակության համախմբումը վերակառուցման գաղա-
փարների հիման վրա, մարդկանց հասարակական-քաղաքական ակտիվությունն ուղ-
ղել կոնստրուկտիվ հունի մեջ, սոցիալ-տնտեսական զարգացման կոնկրետ խնդիր-
ների լուծմանը, հոգևոր ոլորտի նորացմանը: Դրա համար հարկավոր է բարձրացնել
պրոպագանդիստական և մասսայական-քաղաքական աշխատանքի ինտելեկտուալ
մակարդակը:

Մենք շրջկոմի բյուրոյում մանրամասն վերլուծել ենք ընտրություններից հետո
շրջանում ստեղծված իրադրությունը: Անկեղծության, աշխատավորական կոլեկտիվ-
ների հետ մեր հանդիպումներից համոզվել ենք, որ անհրաժեշտ է ստեղծել հասա-
րակական կարծիքի համակարգ և սոցիոլոգիական հետազոտությունների կենտրոն:
Այս գործում հույս ունենք ստանալ գիտությունների ակադեմիայի փիլիսոփայության
և իրավունքի ինստիտուտի ղեկավարության, կուսկազմակերպության օգնությունը:

Ահա այս ամենն էլ հաշվի առնելով, մենք որոշեցինք ժողովրդական դեպուտատ-
ների խորհուրդների առաջիկա ընտրություններ գնալ՝ ունենալով մեր շրջանի կու-
սակցական կազմակերպության ծրագիրը: Օրերս շրջկոմի արտահերթ պլենումը գոր-
ծարար մթնոլորտում քննարկեց ու հաստատեց այն: Ծրագրի իրականացումը, իմ

կարծիքով, զգալի դեր կխաղա թե ընտրությունների հաջող անցկացման, թե (որը ամենակարևորն է) շրջխորհրդի կազմի համար:

Վերլուծելով շրջկոմի, կուսկազմակերպությունների աշխատանքը՝ հարկ է ընդունել, որ մասսաների շրջանում տարվող ավանդույթային կուսաշխատանքը այլևս սպասված արդյունքը չի տալիս: Փաստորեն, տեսականորեն մենք չենք ունեցել նրանց վրա քաղաքական ներազդման փորձ: Խոստովանենք, որ մեկ-երկու տասնամյակներում ձևավորված որոշ կադրեր ընտելացել են միայն հանգիստ, գրասենյակային աշխատանքի: Պետք է նրանց ակտիվացնել, խառնել մեր շարքերը: Գնահատելով շրջկոմի, կուսկազմակերպությունների գործունեության վերոհիշյալ կողմերը՝ ասենք նաև, որ շրջկոմին անհրաժեշտ է մշակել նոր պայմաններին համապատասխան գործողությունների տակտիկա, որի բացակայության հետևանքով շատ հարցերում տանուլ ենք տալիս: Իսկ եթե մեր առջև լրջորեն դրել ենք շրջանի կոմունիստների համախմբման խնդիրը, ապա շրջկոմը պիտի դարձնենք նրանց գաղափարական կոփման կենտրոնը: Այս առնչությամբ դեռ միայն ու միայն առաջին քայլերն ենք անում: Ջգտում ենք դուրս գալ ավանդույթային շրջանակներից, մեր աշխատանքի ոլորտում ընդգրկել նաև կուսակտիվի այսպես կոչված ցուցակներում չգտնվող մարդկանց, նրանց միջոցով տարբեր ինքնագործ կազմակերպություններում անցկացնել կուսակցական գիծը: Վերջերս շրջկոմում հանդիպեցինք շրջանի մի շարք հիմնարկ-ձեռնարկությունների աշխատավորական խորհուրդների նախագահների հետ: Չթաքցնենք, նրանցից ոմանք նույնիսկ շրջկոմի տեղն էլ չգիտեին, մի մասին էլ զարմանք էր պատճառում, թե կուսշրջկոմը իրենց աշխատանքի հետ ինչ կապ ունի: Ակտիվ, անկեղծ ու անկաշկանդ զրույցը, որը հաճախ կրում էր սուր բնույթ, թե՛ շրջկոմին և թե՛ խորհուրդների նախագահներին շատ բան տվեց:

Քաղաքական սիստեմի ռեֆորմի առաջին քայլերը նկատելի են մեզանում: Առկա են շրջադարձը դեպի մարդը, աշխատանքում դեմոկրատիայի, հրապարակայնության, կուսակցական ընկերականության առաջին քայլերը: Կուսշրջկոմը, նրա բյուրոն, ապարատը ջանում են, որպեսզի մարդկանց մեջ վերականգնվի խախտված հավատն իրենց գործունեության նկատմամբ, նրանց հետ հաստատվի իսկական, կենդանի կապ: Այս ամենը հնարավոր է, եթե կարողանանք արմատավորել ու զարգացնել արդի պայմաններից բխող քաղաքական-գաղափարախոսական աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ: Դրանց էլ ուղղված են մեր ջանքերը: Այսօր մեզ համար գործունեության ուղեցույց է ԽՄԿԿ XXVII համագումարի որոշման այն պահանջը, որ յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում պետք է ապահովվի անկեղծությամբ, հղացումների ու որոշումների հրապարակայնությամբ, մարդկայնությամբ, կոմունիստների փոխադարձ պահանջկոտությամբ, ընդհանուր գործի նկատմամբ նրանց անդուլ հոգատարությամբ բնորոշվող լիարյուն կյանքը:

---

# ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՈՒԺԻ ԵՎ ՄԱՐՏՈՒՆԱԿՈՒԹՅԱՆ ԱՂԲՅՈՒՐԸ

**Հ. ՀԱԿՈԲՅԱՆ**

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ հարաբերությունների վերակառուցումը պահանջում է նաև նոր մոտեցում կոմերիտմիության ֆունկցիաների, մեր քաղաքական սիստեմում նրա տեղի կանխորոշման նկատմամբ: Նորովի պետք է կառուցվեն նաև կուսակցության հարաբերությունները կոմերիտմիության հետ, կոմերիտմիության հոգևոր միասնության, նրա կազմակերպական ինքնուրույնության պայմաններում համագործակցության և պարտնյորության միջոցով նպատակների ընդհանրության հիման վրա: «Կոմերիտմիության վերակառուցման գլխավոր ուղղությունը,— ասաց Մ. Ս. Գորբաչովը ԽՄԿԿ Կենտկոմում տեղի ունեցած միութենական հանրապետությունների, երկրկոմների և մարզկոմների առաջին քարտուղարների խորհրդակցությունում,— մենք տեսնում ենք նրա կազմակերպական լիակատար ինքնուրույնության, ինքնագործ խառնվածքի ապահովման մեջ... Այժմ, քան երբեք, հատկապես հարկավոր են մերձեցում և ընկերական փոխգործողություն կուսակցական ու կոմերիտական կոմիտեների, կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների միջև, կոմունիստների ու կոմերիտականների միջև: Վերակառուցումը հեղափոխություն է, և երիտասարդությունը կոչված է լինելու նրա ակտիվ և նախաձեռնող ուժը»:

Սակայն այսօր երիտասարդության միջավայրում առկա է իշխանության մարմինների, բյուրոկրատական, չինովնիկական ապարատի նկատմամբ վստահության ճգնաժամը: Կարո՞ղ ենք, արդյոք, ասել, թե կոմերիտմիությունը հեռացել է գրասենյակային կապվածությունից դեպի իշխանության բյուրոկրատական մեքենան և իրականում դարձել վերակառուցման նախամարտիկ, ժողովրդավարության ջատագով: Հավանաբար, ո՛չ, թեև այդ առնչությամբ գեղեցիկ խոսքեր քիչ չեն ասվել:

Կոմերիտմիության, որպես երիտասարդության քաղաքական կազմակերպության, դերի նսեմացման, կուսակցական կազմակերպությունների և կոմերիտական մարմինների բյուրոկրատական ապարատի կողմից մանրախնդիր խնամակալության հետևանքով մի շարք ԼԿԵՄ կազմակերպություններ դադարեցին իրենց զգալ որպես երիտասարդության շահերի արտահայտիչներ, ընդունեցին ամեն տեսակի որոշումներ առանց նրա մասնակցության՝ նրան հատկացնելով սոսկ կատարողական ֆունկցիաներ: Քաղաքական սուր հարցերը երիտասարդության մասնակցությամբ նույնիսկ չեն քննարկվել: Այդ ամենը չէր կարող բացասաբար չանդրադառնալ կոմերիտական աշխատանքի վրա: Դրա հոգևոր հիմքը աստիճանաբար կարծրացավ ու ճահճացավ, այդ աշխատանքը վերածվեց ցուցամոլության: Ավելացավ «պասիվ» կոմերիտականների թիվը, նրանցից շատերը կտրվեցին իրենց կազմակերպություններից: Ստեղծված օբյեկտիվ պատճառները, որոնք պայմանավորված են մի կողմից՝ հասարակության մեջ տեղի ունեցող հեղափոխական նորացմանը երիտասարդության լայն զանգվածների ակտիվ մասնակցության հարանուն պահանջմունքով, մյուս կողմից՝ պատանիների ու աղջիկների կոմունիստական դաստիարակության գործում եղած լուրջ թերություններով, առաջադրեցին կոմերիտմիության կուսակցական ղեկավարման վերակառուցման կենսական խնդիրը: Համամիութենական կուսակցական XIX կոնֆերանսը նպատակահարմար համարեց կոմերիտմիության վերաբերմամբ իրականացնել մտածված, նպատակասլաց քաղաքականություն, որը լիովին հաշվի առներ ժամանակակից պահանջները, նշեր այնպիսի պայմանների ու ազդակների ստեղծման անհրաժեշտությունը, որոնց շնորհիվ նա կարողանար առավել լայնորեն բացահայտել իր միտքն ու եռանդը, զարգացնել ու իրագործել իր ստեղծագործական պոտենցիալը հանուն սոցիալիզմի:

Միաժամանակ ԽՄԿԿ-ն մշակել է կոմերիտմիության կուսակցական ղեկավար-

ՀԱԿՈԲՅԱՆ ՀՐԱՆՈՒՇ ՀՐԱՆՏԻ— ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար:

## Տնտեսական մեխանիզմ. պրոբլեմներ և հեռանկարներ

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԳՆԱՀԱՏՈՒՄԸ

Ա. ԺՈՒՂՈՒՐՅԱՆ
Խ. ՄՈՒԹԱՖՅԱՆ

Արդի ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ և տնտեսական զարգացման ամենացավոտ պրոբլեմներից մեկը գիտատեխնիկական առաջադիմության (ԳՏԱ) նվաճումների օգտագործումն է: Հասարակական կյանքի բոլոր ոլորտների արմատական վերակառուցման, ժամանակի պահանջներին համապատասխանող որակական նոր մակարդակի կարելի է հասնել գիտության ու տեխնիկայի նորագույն ձեռքբերումների կիրառմամբ, տնտեսական մեխանիզմի արմատական կատարելագործմամբ, մարդկանց աշխատանքային և հասարակական ակտիվության վճռական բարձրացմամբ: Միջոցառումներ պետք է մշակվեն գիտության ու արտադրության ինտեգրացումն ուժեղացնելու նպատակով, որոնք հնարավորություն կտան ապահովելու գիտական գաղափարների հստակ և արագ անցումը հղացման փուլից մինչև գործնական լայն կիրառման փուլ, ուժեղացնելու գիտական հաստատությունների պատասխանատվությունը հետազոտությունների և մշակումների մակարդակի համար:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման կուրսը և արտադրության ինտենսիվացման գործում նրա դերի բարձրացումը նոր, առանձնահատուկ պահանջներ են առաջադրում ոչ միայն էկոնոմիկային, այլև դրա կառավարման այնպիսի ֆունկցիաներին, ինչպիսիք են հաշվառումը, վերահսկողությունը և վերլուծությունը:

Արտադրության ինտենսիվացման պայմաններում ԳՏԱ-ի բնորոշ գիծը ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտներում գիտության և տեխնիկայի նվաճումների ներդրման տեմպերի ու մասշտաբների արագացումն է, որն իր հերթին թելադրում է այդ նպատակների համար միջոցների ռացիոնալ օգտագործման անհրաժեշտություն: Այսպես, եթե մեր հանրապետությունում 1981—1985 թթ. գիտատեխնիկական միջոցառումների ներդրման համար կատարված փաստացի ծախսերի մեծությունը նախորդ հնգամյակի համեմատությամբ աճել է 75,3 տոկոսով, ապա նոր տեխնիկայի ներդրումից ստացված տնտեսական արդյունքը նույն ժամանակահատվածում աճել է միայն 41,7 տոկոսով:

Հսկայական միջոցներ հատկացնելով գիտության ու տեխնիկայի զարգացմանը, պետությունը շահագրգռված է ժողովրդատնտեսական բարձր վերջնական արդյունքներ ստանալու մեջ: Ելնելով դրանից, կառավարող մարմինները կոչված են որոշելու, թե այդ ծախսերը ինչ միջոցների հաշվին և ինչ ծավալով են բաշխվելու ըստ ԳՏԱ յուրաքանչյուր միջոցառման կատարման

---

ԺՈՒՂՈՒՐՅԱՆ ԱՐՄԵՆ ԳԵՎՈՐԳԻ— ԵրԺՏ-ի դոցենտ, տնտեսագիտության թեկնածու
ՄՈՒԹԱՖՅԱՆ ԽԱՉԱՏՈՒՐ ԶԱՎԵՆԻ— ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության գլխավոր հաշվապահ, տնտեսագիտության թեկնածու



փուլերի և ինչպիսին է դրանց փաստացի տնտեսական արդյունավետությունը:
Հարկ է նշել, որ վերջին տարիներին Երևանի թեթև արդյունաբերության
ձեռնարկություններից և ոչ մեկում ստացված փաստացի տնտեսական աճը չի
համապատասխանել նոր տեխնիկայի ներդրման միջոցառումների թվի աճին:
Նման վիճակը վկայում է, որ ճյուղում վատ է օգտագործվում գիտատեխնի-
կական պոտենցիալը: Ավելին, որոշ ձեռնարկություններում անգամ իջել է
արտադրության մեջ ներդրվող գիտատեխնիկական նորույթների թիվը: Այս-
պես, եթե «Մասիս» առևտրաարդյունաբերական միավորումում 1988 թ. նոր
տեխնիկայի ներդրման միջոցառումների թիվը 1987 թ. համեմատությամբ
աճել է 7 տոկոսով, իսկ 1986 թ. համեմատությամբ՝ 12 տոկոսով, ապա նման
միտում չի նկատվում Կ. Ցետկինի անվան կարի արտադրական միավորու-
մում, որտեղ ներդրվող գիտատեխնիկական միջոցառումների թիվը վերջին
տարիներին նվազել է 21 տոկոսով:
Գիտատեխնիկական առաջադիմության արագացման բարդ խնդիրների
լուծման պրոցեսում ձեռք բերած տեխնիկական մակարդակի և արտադրու-
թյան կազմակերպման տնտեսական գնահատումն ու վերլուծությունը անհրա-
ժեշտ են ձեռնարկությունների հեռանկարային և ընթացիկ պլանները կազ-
մելու, սահմանված առաջադրանքների և նախատեսված գիտատեխնիկական
միջոցառումների կատարումը վերահսկելու համար:
Արտադրության ինտենսիվացման կուրսը պահանջում է խորացնել հե-
տազոտությունները ԳՏԱ-ի աշխատախնայողական այն ճյուղերի բացահայտ-
ման ուղղությամբ, որոնք կապահովեն աշխատանքի արտադրողականության
առաջանցիկ աճ արտադրության համեմատությամբ: Այդ նպատակով ան-
հրաժեշտ է արագացված տեմպերով մեքենայացնել ձեռքի, նախ և առաջ՝
չորակավորված և ծանր աշխատանքը, հիմնական պրոցեսների մեքենայացու-
մից անցնել արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատաց-
ման: Ուստի գիտատեխնիկական առաջադիմության արդյունավետության
տնտեսական գնահատման և վերլուծության կարևոր ուղղություններից մեկը
այնպիսի գործնական հանձնարարականների մշակումն է, որոնց իրականա-
ցումը կնպաստեր ձեռքի աշխատանքը մեքենաներով, մեխանիզմներով ու ավ-
տոմատ սարքերով փոխարինելու լավագույն ուղիների հիմնավորված ընտ-
րությանը:
«Մասիս» միավորումում 1988 թվականին, նախորդ տարվա համեմատու-
թյամբ, մեկ գիտատեխնիկական միջոցառման համար կատարված ծախսերի
22 տոկոս ավելացման դեպքում պայմանականորեն ազատվել է 41 տոկոսով
ավելի աշխատող: Վերջին տարիներին միավորումում նկատվող այդ պրոցեսը
ուղեկցվում է մեկ միջոցառման համար կատարված փաստացի ծախսերի
կրճատմամբ, որը վկայում է գիտատեխնիկական առաջադիմության ուղղու-
թյունների կոմպլեքսի լավագույն ընտրության մասին:
Գիտության և տեխնիկայի զարգացումը կոչված է ապահովելու բոլոր
ռեսուրսների արդյունավետ օգտագործումը, անցնելու ռեսուրսախնայողական
տեխնոլոգիաների: Խնայողության հետագա աճը պետք է ձեռք բերվի, ամենից
առաջ, ծախսվող ռեսուրսների հատույցի բարձրացման հաշվին: Ուստի գի-
տատեխնիկական առաջադիմության կառավարման համակարգում տնտե-
սական վերլուծության պարտադիր պայման է ուսումնասիրությունների օբ-
յեկտները բազմակողմանիորեն բնութագրող որակական ցուցանիշների նախ-
նական ընտրությունը: Դրանց հիման վրա հնարավոր է ձեռնարկության մա-
կարդակով կատարել գիտատեխնիկական առաջադիմության արդյունավետու-
թյան գործոնային վերլուծություն:
Գիտատեխնիկական առաջադիմության արագացման պայմաններում կա-
ռավարման մարմինները հիմնական ուշադրությունը դարձնում են աշխա-
տանքային, նյութական և ֆինանսական, այդ թվում գիտական հետազոտու-
թյունների և փորձակոնստրուկտորական մշակումների ոլորտում օգտագործվող
ռեսուրսներից ամենակարճ ժամկետներում առավելագույն հատույց ստա-
նալուն: Այստեղ կարևոր է ձեռնարկության կազմակերպական-տեխնիկական
զարգացման պրոցեսների արդյունավետության գնահատումը: Ձեռնարկու-
թյան գործունեության արդյունավետությունը սկսում է ձևավորվել ոչ թե ար-
տադրության, այլ նախապատրաստական փուլերում, որոնք ապահովում են
գիտական նվաճումների նյութականացումը: Առանց ձեռնարկության գործու-

փոխկապվածությունը ցանկացած տնտեսական օղակում և կծառայեր որպես գիտության ու տեխնիկայի զարգացման հեռանկարային աշխատանքների և արդյունավետ ուղղությունների բացահայտման միջոց։

Հարկ է նշել, որ կիրառվող ցուցանիշները միշտ չէ, որ լիակատար և օբյեկտիվ պատկերացում են տալիս գիտատեխնիկական առաջադիմության միջոցառումների արդյունավետության և արտադրության կազմակերպական-տեխնիկական մակարդակի մասին, քանի որ դրանցից շատերը չեն բխում հաշվապահական հաշվառման համակարգից։

Տնտեսական վերլուծության արդյունավետության պարտադիր պայման է անալիտիկ խնդիրների համակարգի՝ կազմով և բովանդակությամբ բավարար ֆորմացիոն ապահովվածությունը։ Այն որոշվում է առաջին հերթին հաշվառման դրվածքով, որը պետք է տա ոչ միայն արտադրության միջոցների վիճակը և գործունեության արդյունքների քանակական բնութագրերը, այլև դրանց կազմավորման առանձնահատկություններն ու օրինաչափությունները արտացոլող տվյալներ։

Ներկայումս ԳՏԱ փաստացի արդյունքների վերաբերյալ հաշվառման ինֆորմացիայի հավաքման, խմբավորման և ընդհանրացման սկզբունքների մեթոդաբանական և կազմակերպական միասնություն, ինչպես նաև ԳՏԱ տնտեսական ասպեկտների հաշվառման և վերլուծության միջև փոխկապվածություն չկա։

Արտադրության կազմակերպական-տեխնիկական մակարդակի բարձրացմանը նպատակաուղղված միջոցառումները արտացոլվում են նորմերում, նորմատիվներում և հաշվետու ցուցանիշներում։ Միջոցառումների տնտեսական արդյունքի պլանավորման փուլում նկատի է առնվում աշխատանքի արտադրողականության աճի, շահույթի հավելաճի և ինքնարժեքի իջեցման հաշվարկը։ Գիտատեխնիկական առաջադիմության միջոցառումների փաստացի արդյունավետությունը պետք է որոշվի նույն մեթոդիկայով, ինչով որոշվում է պլանային արդյունավետությունը, բայց հաշվառման տվյալների օգտագործմամբ։

ԳՏԱ տնտեսական արդյունավետության վերլուծության համար մեծ նշանակություն է ձեռք բերում արտադրական ծախսերի հաշվառման և արտադրանքի ինքնարժեքի հաշվարկման նորմատիվային մեթոդի կիրառումը, որի դեպքում նախատեսվում է գիտատեխնիկական միջոցառումների ազդեցությամբ նորմաների փոփոխման համակարգային հաշվառում։ Ըստ ծախսերի տեսակների, առաջացման պատճառների ու տեղի նորմաների փոփոխման հաշվառում կազմակերպելը կարող է ապահովել արտադրության զարգացման միջոցառումների արդյունավետության առավել խոր վերլուծություն։

Այսպիսով, ձեռնարկվող գիտատեխնիկական միջոցառումների արդյունավետության կառավարման պրոցեսում հաշվապահական հաշվառումը և տնտեսական վերլուծությունը պետք է պասիվ դեր խաղան, դրանք կարող են ակտիվորեն ներգործել ձեռնարկությունների մակարդակով գիտատեխնիկական առաջադիմության արագացման վրա։ Եթե ԳՏԱ կառավարման գործում հաշվառման ֆունկցիաները հանգում են արտադրական տեղամասերից յուրաքանչյուր միջոցառման փաստացի արդյունքների անընդհատ և համակարգված հավաքմանը, գիտության ու տեխնիկայի զարգացման պլանի կատարման նկատմամբ հսկողություն սահմանելուն, ապա տնտեսական վերլուծությունը կոչված է հաստատելու ԳՏԱ զարգացման ընդհանուր ու մասնակի միտումների դինամիկան և փոխկապվածությունը ցանկացած տնտեսական օղակում, նպաստելու քիչ արդյունավետ աշխատանքների և ուղղությունների հայտնաբերմանը։ Հետևապես ձեռնարկությունների մակարդակով գիտատեխնիկական միջոցառումների արդյունավետության կազմավորման պրոցեսների կառավարումը դառնում է ավելի իրական, երբ ԳՏԱ փաստացի արդյունքները լիարժեքորեն ընդգրկվում են հաշվապահական հաշվառման և տնտեսական վերլուծության օբյեկտների կազմի մեջ։

---

# ԻՆՉՈ՞Ւ ԵՆ ԴԱՏԱՐԿՎՈՒՄ ԼԵՌՆԱՅԻՆ ԳՅՈՒՂԵՐԸ

Ա. ՊՈՏՈՍՅԱՆ

ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՄԻԳՐԱՑԻԱՆ որպես սոցիալ-տնտեսական երևույթ ունի պատմական խոր արմատներ և մշտապես ուղեկցել է մարդկությանը, կարևոր դեր խաղացել տարբեր երկրների ու շրջանների կազմավորման և զարգացման գործում։ Բազմաթիվ ժողովրդատնտեսական պրոբլեմներ դժվար կլինեն լուծել առանց բնակչության կազմակերպված տեղաշարժերի, ինչը հասարակական նշանակության տարբեր խնդիրների իրականացման համար կիրառվում է նաև մեր օրերում։

Միգրացիան որոշակիորեն փոխում է առանձին տարածքային համալիրների բնակչության թիվն ու կառուցվածքը, առաջ բերում աշխատանքային ռեսուրսների տերիտորիալ և ճյուղային վերաբաշխում, ազդում է հասարակական արտադրության, ժողովրդի հոգեկան կերտվածքի և մշակույթի վրա, հանգեցնում մի շարք ժողովրդագրական և սոցիալական հետևանքների։

Սոցիալիստական արտադրության համաչափ ու պլանային զարգացումը պահանջում է աշխատանքային ռեսուրսների կազմակերպված վերաբաշխում, երկրի, հանրապետության տարբեր շրջանների ու տարածքային միավորների համամասնական զարգացում։ Այդ իսկ պատճառով հասարակության համար կարևոր է կարգավորել գլխավոր արտադրողական ուժի՝ բնակչության միգրացիոն հոսքերը, ազդել նրա ուղղության և ծավալի վրա։

Այդ երևույթը միակերպ չի դրսևորվում երկրի տարբեր շրջաններում։ Օրինակ, մինչև այժմ էլ խիտ բնակեցված շրջաններից կատարվում են բնակչության կազմակերպված տեղաշարժեր դեպի Սիբիրի և Հեռավոր արևելքի նոր յուրացվող շրջաններ։ Միաժամանակ միջոցառումներ են իրականացվում ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտում գյուղական բնակչության միգրացիան կարգավորելու, բնակավայրերը վերակառուցելու և տարաբնակեցման համակարգը կատարելագործելու նպատակով։

Բնակչության միգրացիան յուրատեսակ գծերով է դրսևորվում երկրի հարավային լեռնային շրջաններում, մասնավորապես Հայկական ԽՍՀ-ում։ Հայաստանի տարածքի լեռնային բնույթը և խիտ բնակեցումը մեծ բարդություններ են առաջացնում դրա տնտեսական յուրացման, բնակչության տարաբնակեցման ու սոցիալական մյուս խնդիրների լուծման գործում։ Հանրապետության բնակչության տարածքային տեղաբաշխման հիմնական առանձնահատկություններից մեկը նրա խիստ անհամաչափությունն է և բարձր խտությունը՝ 115 մարդ մեկ քառ. կմ-ի վրա։ Միաժամանակ, այստեղ արտադրողական ուժերի անհամաչափ տեղաբաշխմամբ, ինչպես նաև բնաաշխարհագրական առանձնահատկություններով պայմանավորված, մեծ են մասնավորապես գյուղական բնակչության խտությունների տարբերությունները առանձին ռեգիոնների, հատկապես հարթավայրային և լեռնային շրջանների միջև։ Վերջինս բացատրվում է հանրապետության ուրբանիզացման բարձր մակարդակով (68,4 տոկոս քաղաքային բնակչություն) և բնակչության արտահոսքով՝ ծայրամասային, լեռնային շրջաններից դեպի կենտրոնական, հարթավայրային շրջաններ, այդ թվում նաև Երևան։ Ուշադրության է արժանի, որ այս երևույթը նույնատիպ չի դրսևորվում լեռնային տարբեր երկրներում։ Օրինակ, Տաջիկստանում և Կիրգիզիայում ուրբանիզացմանը խոչընդոտող հիմնական գործոնը գյուղական բնակչության թույլ միգրացիան է։

Լեռնային շրջաններից դեպի հարթավայր և կենտրոն բնակչության միգրացիայի

ՊՈՏՈՍՅԱՆ ԱԿՍԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆԻ— Երևանի պետհամալսարանի տնտեսական աշխարհագրության ամբիոնի դասախոս։

հիմնական պատճառը հանրապետության շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակների տարբերությունն է: Իհարկե, իրենց դերն ունեն նաև բնական պայմանները: Ֆ. Էնգելսը նշել է. «Տարբեր երկրների, մարզերի և նույնիսկ վայրերի միջև միշտ էլ գոյություն կունենա կենսապայմանների որոշ անհավասարություն, որը կարելի է հասցնել նվազագույնի, բայց երբեք չի հաջողվի ամբողջովին վերացնել: Ալպերի բնակիչները միշտ էլ ունենալու են այլ կենսապայմաններ, քան հարթավայրերում ապրողները» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 3, էջ 37, Ե., 1978):

Վերջին երեք մարդահամարների տվյալներով, Արարատյան տնտեսական շրջանի բնակչության տեսակարար կշիռը հանրապետությունում բարձրացել է 6,6 տոկոսով՝ գլխավորապես մյուս շրջանների հաշվին: Վիճակագրական տվյալների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ կենտրոնական ռեգիոնի բնակչության մեխանիկական աճի հիմնական աղբյուրը եղել է լեռնային շրջաններից միգրացվող գյուղական բնակչությունը: Ստացվում է, որ աստիճանաբար մեծանում է խիտ բնակեցված շրջանների բնակչության խտությունը՝ լեռնային շրջանների բնակչության խտության աննշան աճի պայմաններում: Իսկ միայն գյուղական բնակչության հաշվով առանձին լեռնային շրջաններում նկատվում է նույնիսկ խտության նվազում: Այսպիսով, շարժը տեղի է ունենում նոսր բնակեցված շրջաններից դեպի խիտ բնակեցված շրջաններ: Եթե 1970 թ. լեռնային շրջանների բնակչության խտությունը հանրապետության միջինին զիջում էր 2,3 անգամ, ապա այսօրվա դրությամբ՝ 3 անգամ: Արարատյան դաշտի շրջաններում բնակչության խտությունը հասնում է 260—370-ի, իսկ Զանգեզուրում, Վայքում և Աշոցքի սարահարթում՝ 15—30: Բնակչության հոսքն առանձնապես ուժեղ է եղել Զանգեզուրի ռեգիոնից, որը հանրապետությունում առանձնանում է համեմատաբար աննպաստ տնտեսաաշխարհագրական դիրքով, սոցիալ-տնտեսական զարգացման ու յուրացման ցածր մակարդակով: Այս ռեգիոնը, որը կազմում է Հայաստանի տարածքի մոտ 15 տոկոսը, հանրապետության ամենանոսր բնակեցված գոտին է (30 մարդ մեկ քառ. կմ-ի վրա), մինչդեռ բնակչության արտահոսքն այս գոտուց ամենաբարձրն է: 1970—1988 թթ. ընթացքում Ղափանի, Սիսիանի և Գորիսի շրջաններից բնակչության հոսքը կազմել է մոտ 30 հազար մարդ: Ավերիչ երկրաշարժը էլ ավելի սրեց միգրացիոն իրավիճակը: Աղետի գոտու շրջանները, որոնք բոլորն էլ լեռնային են, նախկինում էլ աչքի են ընկել բնակչության արտահոսքի բարձր ցուցանիշներով: Ընդ որում, Ղուկասյանի և Ապարանի շրջաններում դա հանգեցրել է բնակչության բացարձակ թվաքանակի նվազմանը: Երկրաշարժի էպիկենտրոնում՝ Սպիտակի շրջանում, վերջին երեք տասնամյակում բնակչության թիվը չի ավելացել 20 գյուղից 9-ում: Ընդ որում, այն նվազել է ոչ միայն փոքր և միջին բնակավայրերում, այլ նաև Գոգարանում, Ծաղկաբերդում, Հարթագյուղում, Լուսաղբյուրում, որոնք դեռևս 1959 թ. ունեցել են 1000-ից ավելի բնակիչ: 1989-ին, 1979-ի համեմատությամբ, շրջանի գյուղական բնակչությունը նվազել է մոտ 2000 մարդով: Նշված ժամանակահատվածում բնակչության հոսքը բարձր է եղել նաև լեռնային մյուս շրջաններից. Սևանի տնտեսական շրջանից՝ 32,8 հազար, Շիրակի տնտեսական շրջանից՝ 23,3 հազար մարդ:

Ուրբանիզացիան ընդհանուր առմամբ դրական երևույթ է: Սակայն հարցն այն է, որ մեզ մոտ այդ պրոցեսը ոչ մի նորմայի չի համապատասխանում: Հանրապետության բնակչության մոտ մեկ երրորդը կենտրոնացված է մայրաքաղաք Երևանում: Բացի բնակչության անհավասարաչափ տեղաբաշխումից անհամաչափ ուրբանիզացիան սրում է զուտ քաղաքային մի շարք պրոբլեմներ, ինչպես քաղաքային տնտեսության կազմակերպումը, մթնոլորտի մաքրության պահպանումը: Հանրապետական ենթակայության քաղաքների մեկ երրորդը՝ թվով 7, գտնվում է Արարատյան տնտեսական շրջանում, դրանցում կենտրոնացված է քաղաքային բնակչության մոտ 59 տոկոսը: Այդ պատճառով աստիճանաբար մեծանում է տարաբնակեցման համար անհրաժեշտ հողատարածությունների չափը՝ անհանդուրժելի կերպով այդ նպատակով ընդգրկելով Արարատյան դաշտի արժեքավոր հողերը: Յուրաքանչյուր 100 քառ. կմ-ին Մասիսի շրջանում ընկնում է 13,9 գյուղական բնակավայր, Էջմիածնի շրջանում՝ 11,5, իսկ Կամոյի և Մարտունու շրջաններում՝ համապատասխանաբար 1,9 և 1,5:

Բացի նշված պրոբլեմներից, լեռնային շրջաններից բնակչության ուժեղ արտահոսքի պատճառով այդտեղ առաջանում է ժողովրդագրական այնպիսի իրադրություն, որն աննպաստ է ինչպես համապետական շահերի տեսակետից, այնպես էլ իրենց՝ լեռնային շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման համար: Անկազմակերպ միգրացիան, հատկապես երիտասարդության շարունակվող հոսքը, հան-





գեցնում են ոչ միայն աշխատունակ բնակչության թվաքանակի բացարձակ ու հարաբերական նվազեցման, այլև զգալիորեն խախտում սեռատարիքային կառուցվածքը: Ժողովրդագրական այս էական փոփոխություններն առաջին հերթին արգելակում են տնտեսության զարգացման հնարավորությունները և, երկրորդ, բացասականորեն են ազդում բնակչության բնական վերարտադրության վրա:

Ընդհանրապես լեռնային շրջաններից միգրացիայի հարցի վերաբերյալ եղել են և այժմ էլ կան տարբեր կարծիքներ: Ուսումնասիրողների մի մասի կարծիքով, արտահոսքը լեռնային շրջաններից ոչ մի բացասական հետևանք չի թողնում՝ պատճառաբանելով, որ մարդիկ ձգտում են ապրել այնտեղ, որտեղ իրենց համար լավ է: Մարդկանց ձգտումը կյանքի լավագույն պայմանների միանգամայն օրինաչափ է ու բնական: Սակայն ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները հնարավորություն են տալիս կյանքի ու ապրուստի լավագույն պայմաններ ստեղծել նաև լեռնային շրջաններում, որոնք աչքի են ընկնում առողջարար կլիմայով, բնական ու հումքային ռեսուրսների պաշարներով:

Բնակչության հեռացումը լեռնային շրջաններից այնպիսի սակավահող հանրա-
պետությունում, ինչպիսին Հայաստանն է, հանգեցնում է տարաբնակեցման առանց
այն էլ փոքր տարածքի նեղացմանը (որի 46,6 տոկոսն է պիտանի բնակության հա-
մար), արդյունավետ չեն օգտագործվում բնական ու աշխատանքային ռեսուրսները:
Պրոբլեմն ավելի է սրվում, երբ նկատի ենք առնում մեր հանրապետության գյուղա-
տնտեսական օգտագործելի հողերի սահմանափակությունը (մեկ շնչին 0,5 հա, իսկ
վարելահողերի հաշվով՝ 0,17 հա, համապատասխան ցուցանիշները ԽՍՀՄ-ում
հավասար են 2,1 և 0,8 հա-ի) և բնակչության աճի համեմատաբար բարձր տեմ-
պերը: Միայն վերջին 25 տարվա (1959—1985 թթ.) ընթացքում այն համարյա
կրկնապատկվել է:

Այնքան էլ հիմնավորված չէ այն կարծիքը, որ առաջիկա տարիներին հանրա-
պետության գյուղական բնակչությունը տարեցտարի կնվազի. «Այդ պրոցեսն ամ-
բողջությամբ վերցրած չպետք է անհանգստություն պատճառի...»— նշում են տվյալ
տեսակետի կողմնակիցները: Նախ, վիճակագրական տվյալների ուսումնասիրությու-
նից պարզվում է, որ չնայած ՀԽՍՀ բնակչության ընդհանուր թվաքանակում աս-
տիճանաբար նվազում է գյուղաբնակների տեսակարար կշիռը, որը միանգամայն
օրինաչափ է, այնուամենայնիվ, այն բացարձակ արժեքով չի նվազում՝ 1970—
1988 թ. ընթացքում ավելանալով մոտ 60 հազարով: Ավելին, ուսումնասիրությունները
ցույց են տալիս, որ հանրապետության գյուղատնտեսության զարգացման ժամանա-
կակից փուլը չի բացառում ձեռքի աշխատանքի համեմատական աճը, հետևաբար
աշխատուժի պահանջն առայժմ մնում է բարձր: Կարելի է եզրակացնել, որ ոչ մի-
այն գյուղական բնակչությունը չի նվազում, այլև առաջիկա տարիներին չպետք է
նվազի նաև գյուղատնտեսական բնակչությունը: Եթե Արարատյան տնտեսական
շրջանում, որտեղ գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մակար-
դակը համեմատաբար բարձր է (բայց այստեղ էլ խաղողի, պտղի և բանջարեղենի
բերքահավաքն ամբողջությամբ ձեռքով է կատարվում) և ձեռքի աշխատուժի պա-
հանջը չի կարող մեծ լինել, ապա նույնը չի կարելի ասել լեռնային շրջաններում
գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման և ձեռքի աշխատուժի պա-
հանջի վերաբերյալ: Հողակտորների փոքր չափերի ու կտրտվածության, լանջերի
թեքության և բնական այլ պայմանների պատճառով լեռնային շրջաններում գյուղա-
տնտեսական աշխատանքների մեքենայացման աստիճանն այնքան էլ բարձր չէ:
Ուստի լեռնային շրջաններում ավելի մեծ չափով է պահպանվում ձեռքի աշխատու-
ժի պահանջը:

Այսպիսով, Հայաստանի լեռնային շրջաններից միգրացիայի գոյություն ունեցող
իրավիճակը չի կարող չանհանգստացնել մեզ և կարևորագույն խնդիր է դադարեց-
նել գյուղական վայրերի բնակչության արտահոսքը, ապահովել նրա ամրացումը
տեղերում: Մանավանդ որ հանրապետության տարածքի միջին բարձրությունը ծովի
մակերևույթից 1800 մ է, իսկ դրա ավելի քան 70 տոկոսը և բնակավայրերի 52,5
տոկոսը գտնվում են 1500 մ բարձրության վրա:

Հարկ է նշել, որ այս ուղղությամբ որոշակի աշխատանքներ են կատարում
ՀԿԿ Կենտրոնական կոմիտեն և հանրապետության կառավարությունը, որոնք մի
շարք կոնկրետ միջոցներ են ձեռնարկել գյուղական բնակչությանը տեղերում ամ-
րացնելու, ինչպես նաև ռեմիգրացիայի պայմաններ ստեղծելու ուղղությամբ: Սակայն
դեռևս շատ բան կա անելու: Հայկական ԽՍՀ տնտեսական և սոցիալական զար-

հումքի վերամշակման արդյունաբերությունը, ագրոարդյունաբերական համալիրները՝ հաշվի առնելով յուրաքանչյուր շրջանի գյուղատնտեսական մասնագիտացման ուղղությունները և հետագա զարգացման հնարավորությունները:

Լեռնային շրջաններից միգրացիայի դադարեցումը պայմանավորված է նաև գոյություն ունեցող տարաբնակեցման համակարգի հետագա կատարելագործմամբ: Հանրապետության լեռնային բնակավայրերի մի շարք առանձնահատկություններ (բնակավայրերի նոսրությունը, անմարդաշատությունը, ցրվածությունը, թույլ կապը միմյանց ու հարթավայրային բնակավայրերի հետ և այլն) դժվարացնում են այդ շրջանների սոցիալ-տնտեսական առաջընթացը: Միգրացիան ուժեղ է հատկապես փոքր գյուղական բնակավայրերից: Նման պայմաններում նպատակահարմար է տարաբնակեցման խմբային համակարգի զարգացումը, երբ մի խումբ գյուղերի մեջ լինում է մեկ խոշոր հենակետային գյուղ՝ իր լրիվ միջնակարգ դպրոցով, ակումբով, կինոթատրոնով, կապի բաժանմունքով, հանրախանութով, կենցաղային սպասարկման կետերով, որոնցից կօգտվեն նաև շրջակա բնակիչները: Խիստ կարևորվում է շրջակա գյուղերի աշխատանքային ու բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը:

Լեռնային շրջաններում գյուղերը կայունացնելու և բնակչության արտահոսքը կրճատելու համար զուտ տնտեսական խնդիրների լուծմանը զուգընթաց առաջնահերթ ուշադրության են արժանի սոցիալական հարցերը՝ անձի համակողմանի զարգացումը, նրա պահանջմունքների բավարարումը: Սոցիոլոգիական ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ Հայաստանի լեռնային և նախալեռնային շրջաններից Երևան մշտական բնակության են տեղափոխվել հիմնականում նյութապես առավել ապահովված ընտանիքները: Հետևաբար, լեռնային շրջաններից բնակչության միգրացիայի կարգավորումը մեծապես պայմանավորված է սոցիալ-կուլտուրական և հոգեբանական գործոններով: Այդ խնդիրը մեր հանրապետության ընդհանուր սոցիալ-տնտեսական առաջադիմության ամենահրատապ պրոբլեմներից է, որի լուծումն այսօր ամբողջ հասակով ծառացած է մեր առջև:

---

# ԹԵԵՎ ԱՆՈՒՆԸ ՕԺԱՆԴԱԿ Է

## Ա. ՍԱՔԱՆՅԱՆ

### ՄԱՐԴԸ ԲՆՈՒԹՅԱՆԸ ԶՈՐԱՎԻԳ

*Կանաչ ժապավենին հար և նման անտառազանգվածը երիզել է կապուտաչյա Սևանը հարավ-արևելքից և ձգվում է 2000 մետր լայնությամբ և 27 կիլոմետր երկարությամբ: Նորադուզի անտառտնտեսության տիրույթն է, որ զբաղեցնում է երեք հազար հեկտարից ավելի տարածություն: Ձախ կողմից հատվում է Մարտունու, աջից՝ Սևանի շրջանի սահմանին: Կանաչախիտ ու հավերժող այս անտառը վերին պարգև չէ մարդուն: Մարդն ինքն է զորավիգ եղել բնությանը ու արարել այն, որն իսկական պարգև է գալիք սերունդներին...*

*Անտառարարման այս հիմնարկությունը ծնունդ է առել 1960-ին, Սևանի անտառտնտեսության Նորադուզի անտառպետության բազայի վրա, դարձել Հայաստանի առաջատար անտառտնտեսություններից մեկը: Ու ծննդի առաջին իսկ օրվանից մինչև այժմ, շուրջ երեք տասնամյակ անընդմեջ, նրա ղեկը վարում է Լևոն Հարությունյանը, վաթսուն տարին արդեն բոլորած, բայց երիտասարդական ավյունով առլեցուն մի այր: «Անտառային գործին քաջագիտակ ու գլխովին նվիրված անձնավորություն է, ազնիվ ու սկզբունքային կոմունիստ» — այսպես են բնութագրում նրան «Հայանտառ» միավորման և ՀԿԿ Կամոյի շրջկոմի ղեկավարները:*

*Անցած երեք տասնամյակը բազում դժվարությունների հաղթահարման ու հաջողությունների, տագնապների ու բերկրանքի ժամանակաշրջան է եղել անտառտնտեսության կոլեկտիվի համար: Այդ տարիներին նրան ապավինված 3.400 հեկտար մերձլճափնյա ավազուտներից ավելի քան 3.150-ը պատվել է ծառերով ու թփերով: Այսօր այնտեղ բնակություն են հաստատել ու նազանքով խշխշում են սոճին ու եղևնին, թեղին ու բարդին, ակացիայի տարատեսակներն ու շքեղաշուք փշարմավենին, այլևայլ ծառեր ու թփեր, որոնք աչք են շոյում, առինքնում, մի անմեկնելի զգացումով համակում մարդու էությունը: Եվ, ամենակարևորը, շատ անտառհատվածներում ընթանում է բնական վերաճի պրոցես, որը մանկան հրճվանք է պատճառում անտառարարող մարդկանց: Ու այդ խինդաբեր պրոցեսը «Հայանտառ» միավորման վարչության պետ Վլադիմիր Ղարիբյանը համարում է անտառի հարատևման պերճախոս վկայություն...*

*Հատկանշական է, որ մի ժամանակ հանրապետության անտառային այլ տնտեսություններից տնկիներ հայցող Նորադուզի անտառտնտեսությունը արդեն մեկ տասնամյակից ավելի է, ինչ ինքն է այդպիսիք մատակարարում ուրիշներին: Քիչ չէ՝ տարեկան 30 հազար ծառ ու թուփ՝ անտառներ հիմնելու և բնակավայրերն ու մայրուղիները կանաչապատելու նպատակով...*

*Ներկա ակնարկը, սակայն, բնավ էլ նվիրված չէ անտառին ու անտառարարման հարցերին: Այն արծարծելու է մի խնդիր, որը պակաս կարևոր չէ, քան անտառարարումը: Այսօր Կամոյի շրջանի Նորադուզի անտառտնտեսությունը հանրապետությունում հայտնի է նաև հայրենաշահ մի այլ գործով ևս, որն առնչվում է պարենային պրոբլեմի լուծման հետ...*

### ՓՈՔՐ ԿՈԼԵԿՏԻՎԻ ՄԵԾ ԳՈՐԾԵՐԸ

*Երկրի առջև ինչպես միշտ, այսօր առավել ևս հույժ անհրաժեշտ ու կենսական պրոբլեմ չկա, քան պարենայինը: Այն խորհելու առիթներ է տալիս նաև Նորադուզի անտառտնտեսության անհանգիստ տնօրենին, կուսակցական կազմակերպությանն ու կոլեկտիվի անդամներին: Առաջ անցնելով ասենք, որ նրանց շատ բան է հաջողվել անել այդ ասպարեզում: Դիմենք պատմությանը...*

*... Տնտեսության տնօրենի միտքը անընդհատ որոնումների մեջ է, քանի որ ոչ միայն նորի ու առաջավորի ջատագով է, այլև ներդնող, արմատավորող: Տակավին տարիներ առաջ էր. քայլում էր անտառահատվածում ու մտորում չգիտես ինչ հարցերի շուրջ: Ու հանկարծ գլխում մի միտք առկայծեց. «Ինչու՞ չզբաղվել թռչնաբուծությամբ, ստեղծել օժանդակ տնտեսություն»: Ի՞նչն էր առիթը: Թերևս այն, որ շրջանի շատ տնտեսություններ կա՛մ վերացրել էին այդ ճյուղը, կա՛մ քիչ արտադրանք էին ստանում: Այդ առնչությամբ էլ տաք խոսակ-*

---

*ՍԱՔԱՆՅԱՆ ԱՐՏԱՎԱԶԴ ՄԱԹԵՎՈՍԻ— «Լենինյան ուղիով» ամսագրի կուսակցական կյանք բաժնի վարիչ, խմբագրական կոլեգիայի անդամ:*

տրակտոր և կցվող գործիքներ են ձեռք բերվել ջերմոցներում աշխատանքը մեքենայացնելու համար։ Կառուցվել և գործում է բանվորական ճաշարանը, լուծվել է բերքահավաքի ընթացքում բանվորներին անվճար ճաշ տալու հարցը։ Եվ, որ շատ կարևոր է, սեփական միջոցներով կառուցվել ու պայմանագրային կարգով բանվորների ընտանիքներին է հատկացվել կոտեջային տիպի ութ առանձնատուն՝ կից հողամասով։ Տարակույս չկա, որ առաջիկա տարիներին ոչ միայն լիովին կիրականացվի կուսակցական ժողովի մշակած սոցիալ-տնտեսական զարգացման ծրագիրը, այլև կլուծվեն այդ բնույթի շատ ու շատ խնդիրներ...

Այո՛, կուսակցության մշակած վերակառուցման կուրսը նոր պահանջներ է առաջադրում նաև անտառաբույծների կոլեկտիվին։ Եվ նրա յուրաքանչյուր անդամ ամենայն պատասխանատվությամբ է վերաբերվում դրանց կատարմանը։ Չես կարող կասկածել Թռչնապահուհի Մարուսյա Սողոյանի խոսքի անկեղծությանը.

— Հավատում ենք վերակառուցմանը։ Դա ստիպում է մեզ ավելի լավ աշխատել, գիտակցական վերաբերմունք դրսևորել հանրային աշխատանքի ու բարիքի նկատմամբ։

Թերևս ընդհանուրի կարծիքն է արտահայտում Նախշուն Տոնոյանը։

— Գոհ եմ աշխատանքից ու վաստակից էլ, ղեկավարների վերաբերմունքից էլ։ Ինչու՞ գոհ չլինեմ. 1986 թվականին կենսաթոշակի եմ անցել, սակայն հանգիստը աշխատանքում եմ զգում, քանի ուժերս ներում են, պիտի աշխատեմ։ Մի դեպք հիշեմ. նախանցած տարին աննպաստ էր, աշխատողներս կեր քիչ կուտակեցինք, դիրեկցիան ծղոտ գնեց ու 70 տոննա բաշխեց մեզ ինքնարժեքով։ Կամ խոսք ունե՞ս ասելու, երբ անասնագլուխ աշխատողներին տարեկան 50—60 էգ հորթ է վաճառվում, նպատակն այն է, որ կոլեկտիվի բոլոր անդամները կով ունենան։

## ՎԵՐՋԱԲԱՆԻ ՓՈԽԱՐԵՆ

Կամոյի շրջանի Նորադուզի անտառտնտեսությունը այսօր «Հայանտառ» միավորման առաջավոր օղակներից է։ Նրա կոլեկտիվը Սևանա լճից ազատված տարածությունները հաջողությամբ կանաչապատելու, իր առջև ծառացած խնդիրները պատվով լուծելու համար բազմիցս արժանացել է միութենական ու հանրապետական մրցանակների, իսկ նրա տնօրեն Լևոն Հարությունյանը՝ հանրապետության վաստակավոր անտառաբույծի կոչման, Հոկտեմբերյան հեղափոխության ու Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանների, բազմաթիվ մեդալների ու պատվոգրերի։ Վաստակաշատ անտառաբույծը այդ ամենը վերագրում է իր ղեկավարած կոլեկտիվին, այդ թվում օժանդակ ճյուղերի աշխատողներին։ Ծանոթանալով օժանդակ տնտեսության գործունեությանը՝ ուզում ես լիաբերան կրկնել Նախշուն Տոնոյանի արտահայտած միտքը՝ թեև օժանդակ է, սակայն իսկական տնտեսությունից շատ արդյունք է տալիս։ Մնում է օժանդակային ցանկալ նոր հաջողություններ։



# ՄԵՐ ԱԶԳԱՅԻՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ

Գ. ԴԵՎՐԻԿՅԱՆ

«... Ճեղքվեցին լեռները և քարերը, անշրդի վայրերում բացվեցին աղբյուրներ, փակվեցին սովորական ջրերի ակերը, դաշտերը երերում էին և լեռները դեպի իրար էին խոնարհվում, փոշին ծխի նման բարձրանալով լցնում էր օդը և քաղաքների, գյուղերի ու ագարակների բոլոր շենքերը տապալվեցին և բնակիչներին տակով արին՝ մեռած կամ կիսամեռ: Կենդանի մնացածների ճիչը, լացն ու ողբը երկինք էին բարձրանում: Բալուի բերդը շինվածքներով հանդերձ, քարերն անգամ քանդեց: Խարխլեց Ծապաղջուրը, Դկլաթի բերդը, Աքքախը, Ամիդը և բոլոր քարուկիր գեղեցիկ եկեղեցիներն ու ապարանքները: Այս տեղի ունեցավ քաղոց ամսի վերջին օրը և այս կերպ տևեց վեց ամիս»: Անհա Չորրորդ Հայքում 995 թվականին տեղի ունեցած ահավոր աղետն այսպես է իր մատյանում արձանագրել դեպքերին ժամանակակից Ստեփանոս Տարոնացի Ասողիկ պատմիչը:

Ես երկրաշարժերի մասին առավելապես գրքերից գիտեի ու, մանավանդ, մեր պատմիչների մատյաններից: Չէ որ իմ պատմվածքներում քանիցս նկարագրել եմ երկրաշարժերը, որոնք եղել են տարբեր դարերում: Նկարագրել եմ որպես մեծագույն աղետ, ժողովրդին հասած ծանր դժբախտություն, հատկապես 1679 թվականինը, որ եղավ Երևանում: Սակայն երբեք էլ մտքովս չէր անցնի, թե դա մի օր իրական է դառնալու ինձ համար, լինելու եմ այդ արհավիրքի ականատեսը. միայն ականատեսը: Հեշտ է ասել՝ ականատես. միայն նա է զգում այն, ինչն արդեն չես հաղորդի ոչ լեզվով, ոչ խոսքով, ոչ թեկուզև կինո և լուսանկարչական ժապավեններով: Տեսածի տպավորությունն այլ է, ապրումներն այլ են, իսկ պատկերվածները՝ բոլորովին այլ:

Այո, մինչև 1988 թվականի դեկտեմբերի յոթի չարաղետ օրը երկրաշարժը բոլորիս էլ ինչ-որ անիրական ու հեռավոր բան էր թվում և նույնիսկ նրանց, ովքեր տեսել էին 1926-ինը: Դրանից հետո էլ երկրաշարժեր էին եղել Հայաստանում, սակայն ոչ ուժեղ՝ Զանգեզուրինը, ոչ էլ որևէ փորձել էին դրանցից դասեր քաղել, ոչ էլ որևէ հետևության հանգել: Դե երկրաշարժ է, եկավ ու անցավ, ավերեց ինչ-որ բան, դա էլ կվերաշինվի, իսկ մարդկային զոհեր չկան և լավն էլ դա է: Բայց զուցե և կային, ի՞նչ իմանաս, չէ որ այն տարիներին այդ մասին խոսք չէր կարող լինել: Աշխարհն էլ քանդվեր՝ մարդկային զոհ չէր լինելու: Այդպես էր սահմանված ու կարգադրված և՝ վերջ:

Եվ այսպես՝ զոհեր չկան ու չեն էլ կարող լինել, իսկ շենքերն էլ՝ շենքեր են, ավերվել են՝ նորը կկառուցենք: Հայաստանում ի՞նչն է առատ՝ քար:

Իրոք, զարմանալի է մարդկային հիշողությունը, երբեմն շատ սուր է ընկալում, մտապահում ամեն ինչ, երբեմն էլ շատ արագ մոռանում կամ ցանկանում մոռանալ: Այդպես էլ 1926 թվականի Շիրակի երկրաշարժը: Չէ որ կառուցողները շատ շուտ մոռացան ամեն ինչ: Ու նույնը նաև գիտնականները, որոնց երևի հրամայված էր լռել (բայց մի՞թե մարդկային խիղճը լռեցնում են): Իսկ ահա ականատեսները չէին մոռանում: Այդ երկրաշարժը չէր մոռացվում նաև մեր տանը, որի միակ ականատեսը, ավելի շուտ՝ ականջալուրը, մայրս էր: Նա ավելի շատ զգացել էր երկրի այդ ուժեղ տատանումները, քան տեսել ավերները: Չէ որ որբանոցի սան էր եղել, իսկ որբերն իրավունք չէին ունեցել այդ տարածքից դուրս գալու: Ու թեև իրենց կացարանները չէին փլվել, սակայն որբերը մեկ ամսից ավելի դրսում էին քնել աշնանային այդ ցրտերին, քանի որ շատ մեծ էր եղել ահը:

Առհասարակ սովորական ու խաղաղ ժամանակներում անցած իրադարձություններն ու վշտերը մոռացվում են կամ չեն հիշվում: Իսկ մեծ արհավիրքների օրերին մեկեն հիշվում են իրենց մանրամասներով, հուշ-եղելություններով և նույնիսկ՝ երգերով: Այդպիսի մի շրջան էին Հայրենականի տարիները: Ու թեև մեր հաճախակի հիշում եմ, լենինականցիների մեջ, որքան հիշում եմ, լենինականցիներ չկային, սակայն մենք՝ երեխաներս, այժմ չգիտեմ էլ, թե որտեղից սովորել էինք մի երգ, որն սկսվում էր այսպես.

Առավոտյան ժամը եղավ,
Գյումրին ավերեց...

շատ-շատերն էվակուացվեցին Հայաստանից դուրս, և քչերը չէ, որ արցունքն աչքերին սպասում են իրենց տունդարձին: Իսկ աղետյալ գոտու վերականգնման նման թափը ոչ մի երաշխիք չի տալիս, թե այդ տունդարձը կարագանա: Այն ժամանակ և այսօր առավել պարզ է դարձել, թե պետք էր այդ ամբողջ օգնությունը կենտրոնացնել Հայաստանում և աղետյալներին տրամադրել Հայաստանի բոլոր առողջարանները, հանգստյան տները, գերատեսչությունների բոլոր տեսակի պանսիոնատները, պիոներական ճամբարները: Դրանք քիչ չեն Հայաստանում և այն սնունդը, որ նրանք ստանում են դրսում և որից շատ դժգոհ են, քանզի այն հեռավոր նմանություն իսկ չունի հայկական խոհանոցին, և երեխաները թերասնվում են, հարկավոր էր տալ հենց այստեղ: Այդ դեպքում աղետյալները մոտ կլինեին իրենց հող ու ջրին, հնարավորություն կունենային գնալ-գալ իրենց բնակության վայրերը, վերաշինել տները և հայրենաբաղձությունն այդքան թախիծ ու կարոտ չէր բերի նրանց հոգուն, որը ծանր հոգեկան ապրումների է հասցնում:

Աբխազիայում, մի պանսիոնատում հերթական հանդիպումից հետո մեզ մոտեցավ լենինականցի մի կին և ասաց.

— Ինչո՞ւ են մեզ թողնում այստեղ, ինչո՞ւ են մեզ մոռացել, մենք թանկ շիրիմներ ունենք, որ անտեր ենք թողել, այդ մասին մտածող չկա՞, այլևս անհնար է դիմանալ:

Այո, մարդկանց նաև (և գուցե առաջին հերթին) այդ շիրիմներն էին կանչում: Այդ արյունարցունքը, որ հեղվեց դեկտեմբերի 7-ի չարագուշակ օրը և շարունակվում է հեղվել, առավել ծանրագին է դարձնում հայրենի հողը և մագնիսի նման ձգում-բերում է իր տարաբախտ ու զրկված զավակներին, որոնք մի պահի մեջ աղետյալներ դարձան: Ինձ պատմեցին, թե ինչպես նույն այդ Նալբանդ գյուղում, երկրաշարժից մի քանի օր անց, երբ ակնարկել էին վերապրողներին, թե դժվար է լինելու այդպես անօթևան մնալ, գուցե ժամանակավորապես ինչ-որ տեղ գնան, մի կին ասել էր.

— Ո՞ւր գնանք, չէ որ այստեղ են մեր հարազատների շիրիմները:

Այդ բանի ճշմարտությունը ես առավել պարզ զգացի սեպտեմբերի մեկին Գուգարքի Լեռնապատ գյուղում: Այստեղ փլվել էր դպրոցը, և զոհվել էին երեսունմեկ աշակերտներ ու երկու ուսուցիչներ: Եվ սեպտեմբերի մեկի օրը, որ լինելու էր ուրախության օր, վերածվեց սգո օրվա, քանզի առաջին զանգի արարողությունից հետո, որին թե աշակերտները, թե ուսուցիչներն ու ծնողները եկել էին արցունքոտ աչքերով, գյուղովին շարժվեցին շիրմատուն, ուր ննջում էին այդ թանկ և անմեղ զոհերը:

... Երկրաշարժից մի քանի օր սնց հանդիպեցի համակուրսեցի ընկերոջս՝ խորհրդային աշխատող Վաղարշակ Ծափաղարյանին: Սպանդարյանի շրջխորհրդի իր կոլեկտիվի հետ Սպիտակից էր վերադարձել, ուր մեկնել էին փրկարարական աշխատանքների: Եվ պատմեց մի բան, որ երբեք ու երբեք հիշողությունիցս չի ջնջվի:

— Սկսել էինք շենքերից մեկի փլատակները մաքրել: Մի կին կանգնել ու անթարթ նայում էր: Մեզ ասացին, թե այդ շենքի բնակիչներից է եղել և բոլոր հարազատները աշխատավայրերում զոհվել են: Այդպես մաքրում էինք հարկ առ հարկ: Եվ ողջ մնացած բնակիչները, ճանաչելով իրենց իրերը, վերցնում ու մի կողմ էին դնում: Հասանք և նրա բնակարանին: Տեսնելով, որ ինքն իրերի հանդեպ անտարբեր է, ինքներս վերցրինք ու մի կողմ դրեցինք գորգը, էլի թանկարժեք մի քանի բաներ: Նա դրանց վրա չէր էլ նայում և անընդհատ ինչ-որ բանի էր սպասում: Վերջապես դուրս եկավ և ընտանեկան ալբոմը: Նա առաջ եկավ, վերցրեց ու սեղմեց կրծքին: Ու մեզ շնորհակալություն հայտնելով ցանկանում էր հեռանալ, երբ մեկն ակնարկեց մնացած իրերի մասին: Նա նայեց մեզ ու ասաց. «Տվեք ուրիշներին, ինձ այլևս ոչինչ հարկավոր չէ, ես միայն սրան էի սպասում»: Մենք անչափ հուզված էինք ու երկար ժամանակ լուռ:

Այո, այդքան կորուստներից հետո նրան այլևս ոչինչ հարկավոր չէր եղել այս լույս աշխարհում: Նա իր հետ տարել էր ընտանեկան լուսանկարները, իր հարազատների դեմքերը, որոնք այլևս չկային: Տարել էր պահպանելու թանկ հիշողությունը նրանց մասին: Այդ անկորնչելի հիշողությունը:

Եվ այս է մեր ազգային նկարագիրը...



# ԽՈՀԵՐ ՈՒՍՈՒՑՉԻ ԵՎ ԴՊՐՈՑԻ ՄԱՍԻՆ

**Թ. ՇԱՄԱՄՅԱՆ**
**Ռ. ՆԱԶԱՐՅԱՆ**

ԵՐԲ ԸՆԴՈՒՆՎԵՑԻՆ հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունները, մանկավարժական աշխարհը ոգևորություն ապրեց՝ ակնկալելով հաստատուն և հիմնիվեր բարեփոխումներ՝ սկսած ուսումնական պլաններից ու ծրագրերից մինչև դպրոցական ժամանակակից շինությունները: Անկեղծ լինելու համար ասենք, որ ռեֆորմի շուրջ ստեղծված աղմուկ-աղաղակն ու իրարանցումը շատ ավելի մեծ էին, քան իրականում ձեռնարկված միջոցառումները: Համենայնդեպս ռեֆորմից բխող նորությունները առայժմ հեռու են բավարար լինելուց և, ճիշտն ասած, առանց դրա էլ այդքանը պիտի արվեր: Հետո եկավ վերակառուցման գաղափարը: Սկսեցինք թմբկահարել, թե մեզ անհրաժեշտ են վերակառուցված հոգեբանությամբ մանկավարժներ, դասավանդման նորագույն միջոցներ, ուսուցման ձևերի բազմազանություն և այլն: Դարձյալ շիտակությունը պահանջում է ասել, որ ոչ մի էական փոփոխություն տեղի չունեցավ: Մեր կարծիքով, ուսուցման համակարգի վերակառուցումը ենթադրում է նոր դպրոց՝ այս բառի բուն իմաստով՝ ժամանակակից դպրոցական հարմարավետ շենքեր, հարուստ նյութատեխնիկական բազա և առաջին հերթին՝ բարձրորակ կադրեր, որ, ցավոք, առայժմ չափազանց քիչ ունենք: «Դպրոց» ասելով պետք է հասկանալ ոչ թե շենք, հիմնարկ, այլ՝ ուսուցիչ: Նա՛ է դպրոցի դեմքը, էությունը, սիրտն ու հոգին, այն հմուտ բրուտը, որի ձեռքերի մեջ հում կավի նման ձևավորվում, ամբողջանում է երեխայի բարոյահոգեբանական կերպարը: Նա այն պրակտիկ հոգեբանն է, որն ամենօրյա իր աշխատանքային նուրբ մեթոդներով ու հնարներով թափանցում է երեխայի ներաշխարհը, պրպտում, ուսումնասիրում, ընթացք տալիս նրա մտածողությանը, ձգտումներին, խոհերին ու հակումներին: Այլ կերպ ասած, մեր պատկերացմամբ, ուսուցիչն այն անձնավորությունն է, որն իր գիտելիքներով, էությամբ, խառնվածքով, կեցվածքով, մտածելակերպով, ամե՛ն, ամե՛ն ինչով, իր էության բոլոր հյուլեներով եզակի է և ինքնատիպ:

Եթե բժիշկը, ճարտարապետը, դերասանը կամ շինարարը լոկ բժիշկ են, ճարտարապետ, դերասան կամ շինարար, ապա իսկական ուսուցիչն այդ բոլորի ազնիվ համաձուլվածքն է, նրանց լավագույն գծերի ներդաշնակ ամբողջությունը: Այո՛, նա մարդ է, որի մեջ պետք է ապրեն և՛ դերասանը, և՛ ճարտարապետը, և՛, մանավանդ, շինարարը՝ մարդկային հոգու շինարարը: Ահա թե ինչու ուսուցիչ ծնվում են և ոչ թե դառնում: Այդ մասնագիտությունն արհեստական պատվաստումով ծիլեր չի արձակի, շիվեր չի տա: Խառնվածքո՛վ պետք է լինել ուսուցիչ, հոգո՛վ, սրտո՛վ, բարությա՛մբ, մարդընկալման բնատուր ձիրքով, արտիստական շռայլ ներաշխարհով: Յուրաքանչյուր լավ ուսուցիչ միաժամանակ լավ արտիստ է, բնածի՛ն արտիստ: Ինչպես երեխային գրավում է թատրոնի բեմը և նրա տիրակալը՝ դերասանը, խոսքի հուժկու թափով և համոզչականությամբ, այդպես էլ դպրոցը, դասը և այն վարող գլխավոր դերակատարը՝ ուսուցիչը, պիտի կարողանա՛ աշակերտին համակել դասի ռոմանտիկայով՝ իր հետ տանելով մերթ տիեզերական անհուններ, մերթ Ավարայրի հերոսամարտը՝ ինքը միշտ մնալով կենտրոնում, իբրև գործողությունների անմիջական ականատես ու մասնակից: Նա պիտի կարողանա այդպիսին երևալ երեխայի աչքում, հմայել, կախարդել այնպես, որ վերջինս մոռանա հաշվել րոպեները, սպասել բաղձալի զանգին: Միայն մենք՝ մանկավարժներս գիտենք, թե ինչպիսի արագությամբ է աշակերտը որսում ուսուցչի տրամադրությունը և անմիջապես ինքն էլ վարակվում:

---

*Շամամյան Թերեզա Սզորի— Երևանի № 119 ֆրանսերենի խորացված ուսուցմամբ միջնակարգ դպրոցի դիրեկտոր, ՀԽՍՀ վաստակավոր ուսուցիչ:*

*Նազարյան Ռուբինա Քրիստափորի— Դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցիչ, ժողովրդական կրթության գերազանցիկ:*

Կարծում ենք, որ ուսուցչի ամենակարևոր հատկանիշներից գլխավորը գեղեցիկ, կիրթ և մաքուր մայրենիով խոսքն է: Նրա խոսքը պետք է լինի հստակ, բխի մատուցվող թեմայից՝ մերթ այրելով, մերթ շոյելով, մերթ պաղեցնելով, մերթ՝ լիաթոք ծիծաղ առաջացնելով: Սա վերաբերում է բոլոր ուսուցիչներին՝ անխտիր: Ընդ որում, ոչ միայն դասապրոցեսում, այլև դասամիջոցներին, փողոցում, կենցաղում, ամենուր: Հակասություն չպետք է լինի մարդու և մանկավարժի կոչման ու գործունեության միջև: Ուսուցչի ամենամեծ զենքը նախ նրա լեզուն է, ապա՝ գիտելիքները: Բնության մեջ չկա մարդու վրա ներգործելու ավելի հզոր միջոց, քան խոսքը...

Փորձեք դասեր լսել դպրոցներում: Վըստահ եղեք, որ քիչ տոկոս կազմող լավի կողքին կհանդիպեք մեր կյանքի տիրակալ ամենակարող միջակությանը, երբեմն էլ ավելի տխուր մի երևույթի՝ դպրոց մուտք գործած մարդկանց, որոնք ոչ մի կապ չունեն ընտրած մասնագիտության, երեխայի հետ: Մանկավարժական ասպարեզ են ընկել զուտ պատահականության բերումով. երազել են անպայման ուսումը շարունակել բուհում և ընտրել են մանկավարժությունը՝ վախենալով ուժերը փորձել բժշկական կամ պոլիտեխնիկական կրթության ոլորտում: Արդյունքը՝ խոտան ուսուցիչ, խոտան աշակերտ: Ահա թե ինչու ամեն մարդու չէ, որ պիտի իրավունք տրվի դիմել մանկավարժական բուհ: Նա կարող է այնտեղ դիմել միայն դպրոցի երաշխավորությամբ, ինչպես նաև՝ նախքննական հարցազրույց անցկացնելուց հետո, ուր պետք է նկատի ունենալ նրա գիտելիքները, մայրենիի իմացությունը, նույնիսկ այլ մանրուքներ՝ արտաքինը, ձայնը, շարժումը, առինքնելու ձիրքը, արտիստականությունը: Սա դեռ գործի կեսն է:

Հայտնի է, որ բուհն ավարտելուց հետո շրջանավարտն անմիջապես չի կարող ընդունվել աշխատանքի, քանզի տեղ չկա, անհրաժեշտ է հերթագրվել: Պատահում է, որ իր հերթին նա սպասում է տասը և ավելի տարիներ: Մոռացվում է անցածը, ժամանակի փոշին նստում է իմացածի վրա, իսկ մինչ այդ գիտությունը նույն աստիճանի վրա չի մնում, այն ապրում է հանապազօրյա զարգացում: Այսպիսով շրջանավարտը մոռանում է ոչ միայն ինստիտուտում սովորածը, այլև անհաղորդ է մնում նորություններին: Այդ ամենից հետո միթե նա կարող է դասարան մտնել, դասավանդել: Քանի՜ երեխայի բախտի հետ պետք է խաղա, մինչև ինքը սովորի: Պատահել է դեպք, երբ տասնհինգ տարի արտադրությունում աշխատած կադրը ժողկրթբաժնի կողմից ուղարկվել է դըպրոց, որովհետև ուսուցիչ աշխատելու նրա հերթը հասել է: Ի՞նչ պահանջես երկար տարիներ դպրոցի հետ առնչություն չունեցած և արդեն որակազրկված այն մասնագետից, որը չի տարբերակում ուղղական-հայցական, տրական-հայցական հոլովները, չի պատկերացնում դրանց շարահյուսական կիրառությունների նրբությունները: Նման դեպքերում ինչո՞վ են մեղավոր դպրոցը, աշակերտը:

Մենք խոտան տալու իրավունք չունենք: Հնարավոր է ներել արտադրության ոլորտում խոտանի առկայությունը, շտկել այն, բայց մարդկային խոտանի գոյությունը՝ երբեք: Այն անհանդուրժելի է, որովհետև հենց նա է, որ հետագայում մարդ է բըժշկելու կամ հաստոց ստեղծելու, շենք է կառուցելու կամ երեխա կրթելու:

ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը 1988 թ. սեպտեմբերյան պլենումում իր զեկուցման մեջ շեշտեց, որ «Անհրաժեշտ է առողջացնել հանրապետության կադրային ջոկատը, նրան ազատել ամեն տեսակի կարիերիստներից, հարմարվողականներից, հաճոյակատարներից, վերակառուցման մեջ ներառել անցյալի բեռից ազատ նոր ուժեր: Այսօր կուսակցական, խորհրդային, տնտեսական աշխատանքի բոլոր տեղամասերում հարկավոր են պատասխանատու, բանիմաց, թե՛ մտածողությամբ, թե՛ գործողություններով համարձակ մարդիկ, ոչ միայն պարզապես գրագետ, այլև գործի նկատմամբ շահագրգիռ կազմակերպիչներ»:

Ժողկրթբաժիններում մանկավարժական կադրերի հերթեր են ստեղծվում: Դրանցից խուսափելու համար համապատասխան բուհերը հավանաբար պիտի ծրագրավորեն իրենց աշխատանքը, ստեղծելով համամասնություն դիմորդների ընդունելության թվի և դպրոցներում առաջիկա տարիներին ըստ առարկաների ուսուցիչների պահանջարկի միջև՝ դրանով իսկ կանխելով կադրերի անցանկալի կուտակումներն ու որակազրկումը: Երկար տարիներ հերթագրված մասնագետները դպրոց մուտք գործելու իրավունք պետք է ստանան մըրցութային կարգով, այն էլ միայն ուսուցիչների կատարելագործման ինստիտուտում մեկ տարի վերապատրաստվելուց և համապատասխան բնութագիր-երաշխավորագիր ներկայացնելուց հետո:

Լավ ուսուցիչ, բնատուր մանկավարժ ունենալը շահեկան է բոլոր առումներով: Նա կարողանում է ստեղծել փոխըմբռնման մթնոլորտ դասարանի հետ, ցուցաբերել նրբանկատ վերաբերմունք երեխայի նկատմամբ: Ի դեպ, ուսուցչի և աշակերտի փոխհարաբերության հարցն այսօր մանկավարժության խոցելի կողմերից մեկըն է և հուզում է նաև ծնողներին: Նրանց, բնականաբար, մտահոգում է դպրոցում երեխայի անձի նկատմամբ ստեղծված բարոյահոգեբանական մթնոլորտը: Գաղտնիք չէ, որ մեր բարդ ժամանակներում, երբ երեխան հաճախում է այլևայլ խմբակներ, միաժամանակ սովորում հանրակրթական դպրոցում, դիտում հեռուստահաղորդումներ, ընդունում լայն տեղեկատվություն, ապա նրան քիչ ժամանակ է մնում խաղալու կամ հետաքրքրող այլ բաներով զբաղվելու: Նա անհամեմատ զարգացած է, խելացի և ներքին ու արտաքին բազում ազդակների ճնշմամբ ավելի նյարդային ու զգայուն: Այս ամենը նկատի ունենալով՝ անհրաժեշտ է դասապրոցեսում բոլոր աշակերտների նկատմամբ անխտիր ստեղծել խաղաղ, բարեկամական մթնոլորտ՝ անկախ նրանից, թե ինչպես են սովորում նրանք և բնավորության ինչպիսի գծերով են օժտված: Նույնիսկ վատ հակումներով օժտված երեխային պետք է դաստիարակել միմիայն հարգալից վերաբերմունքով: Բավական է, որ նա մեկ անգամ հունից դուրս գալով վիրավորի ուսուցչին, կոպիտ պատասխանի նրան: Դա կդառնա ցավալի սովորույթ, միաժամանակ համարձակություն կներշնչի նաև ամբողջ դասարանին: Մյուս կողմից՝ ինքներս մեր մանկության օրինակով գիտենք, որ աշակերտը սովորում է սիրած ուսուցչի առարկան: Մանկավարժն իրավունք չունի տուրք տալու համակրանքներին ու հակակրանքներին: Նրա դիմաց աշխարհի ամենամեծ մարդն է՝ երեխան, որի նկատմամբ պիտի լինել բարի ու անաչառ:

Մեզ անհանգստացնող մյուս խնդիրը ուսումնական պլանների, ծրագրերի և դասագրքերի անհամապատասխանությունն է ուսումնադաստիարակչական աշխատանքների բովանդակությանը: Ուսումնական պլաններում ընդգրկված են առարկաներ, որոնք երեխային գրեթե ոչինչ չեն տալիս, բացի ավելորդ ծանրաբեռնվածությունից: Բերենք մեկ օրինակ: Ուսումնառության տարիներին, սկսած 4-րդ դասարանից, աշակերտները ուսումնասիրում են ԽՍՀՄ, հին աշխարհի, միջին դարերի, նոր, նորագույն, ընդհանուր և վերջապես հայ ժողովրդի պատմություն: Ժամանակը չէ՞, որ ազգային հանրապետությունների դպրոցներում սովորողները խորությամբ իմանան նախևառաջ իրենց ժողովրդի, ապա, ինչ խոսք, նաև մեր բազմազգ երկրի սեղմ, ճշմարտացի և իրական պատմությունը: Մեր պատկերացմամբ դպրոցը պիտի կյանք ճանապարհի համակողմանիորեն զարգացած մարդկանց: Դա դարի պահանջն է, ժամանակի հրամայականը:

Տիեզերական առեղծվածների բացահայտման ու մեծագույն նվաճումների մեր օրերում մտավոր, բարոյական ու հոգեկան աղքատությունը չարիք է, որից մեկընդմիշտ պետք է ձերբազատվել: Դարձյալ պետք է սկսել դպրոցից: Ծեշտը դնելով զուտ ուսումնական պրոցեսի գիտական ուղղվածության վրա, ուսումնական պլաններ կազմողները մոռանում են սովորողների հոգևոր դաստիարակությունը:

Կերպարվեստ, երգ-երաժշտություն դըպրոցում անցնում են մինչև 6-րդ դասարանի երկրորդ կիսամյակը: Սակայն էլ ե՞րբ, քան պատանի հասակում աշակերտը կարող է հասու լինել վեհին, գեղեցիկին, էլ ե՞րբ, քան ճկուն մտքով և աշխարհընկալման անսպառ հնարավորություններով օժտըված տարիքում, երբ դեռ չի կքել կյանքի ծանրության տակ, նա կարող է ճանաչել ազգային և համամարդկային արվեստի հսկաներին: Փորձեք հարցնել, թե ովքե՞ր են Վ. Սուրենյանցը, Փ. Թերլեմեզյանը կամ Գ. Բաշինջաղյանը, ի՞նչ խորհուրդ կա հայ մանրանկարչության նրբագեղ աշխարհում, ինչո՞վ են համամարդկային Մ. Սարյանի կամ Մինասի գործերը, Ա. Խաչատրյանի խորապես ազգային երաժշտությունն ինչո՞ւ է հասկանալի և սիրելի այլ ժողովուրդներին, որո՞նք են այն զուլալ ակունքները, որոնցից սնվում է հայ երաժըշտությունը: Վստահ ենք, որ թերևս միայն նկարչական և երաժշտական կրթություն ստացած երեխաները կկարողանան պատասխանել այդ հարցերին: Սակայն ինչո՞վ է մեղավոր այն աշակերտը, որին բախտ չի վիճակվել հաճախել մասնագիտական դպրոց:

Նկատի ունենալով վերը ասվածը՝ առաջարկում ենք 8—10-րդ դասարանների ուսումնական պլաններում մտցնել և՛ երգ-երաժշտություն, և՛ կերպարվեստի ուսուցում: Կարծում ենք, որ վերոհիշյալ պլաններում պետք է ընդգրկել նաև «Կենցաղավարություն» առարկան, որ դասավանդվել է դեռևս արևմտահայ դպրոցում՝ երեխաների համար դառնալով կյանքի յուրօրինակ այբուբեն: Այն, անշուշտ, երեխաներին կպատրաստի ոչ պակաս կարևոր ընտանեկան կյանքին՝ սկսած ամենահասարակ հարցերից մինչև ամուսնական փոխհարաբերությունները:

Այժմ ծրագրերի և դասագրքերի մասին: Ծրագրերը գերծանրաբեռնված են, բարդ: Դրանք կազմված են աշակերտին ամեն

ինչ միանգամից սովորեցնելու միտումով: Այդպիսի ձգտում կարող է ունենալ միայն դպրոցից, երեխայից շատ հեռու գտնվող մարդը: Եվ միայն մանկավարժը կարող է հասկանալ՝ երեխայի ուղեղը ամեն ինչ չէ, որ կարող է ըմբռնել ու մտապահել: Երեխան իր մտավոր ու ֆիզիկական կարողություններից վեր բան անել չի կարող: Չպետք է մոռանալ, որ դասարանում հավաքված են տարբեր ընդունակություններով, տարբեր հակումներով աշակերտներ: Նրանք միևնույն մկրատով ձևված կամ միևնույն կաղապարով ձուլված կենդանի միավորներ չեն և բոլորին հավասարապես չէ, որ հասանելի է մատուցվող նյութը: Մեր կարծիքով, օրինակ, հայոց լեզվի երեք դասագրքի փոխարեն կարելի է գրել մեկը՝ դրանում թողնելով միայն սովորողների գրավոր և բանավոր խոսքի ստեղծագործական ունակությունների զարգացմանը նպաստող նյութերը: Մնացած մանրամասնությունները՝ մասնագիտական ֆակուլտետներում: Նույնը վերաբերում է մյուս առարկաներին: Ծրագրերը կաշկանդում են նաև ուսուցչին: Առաջնորդվելով դրանցով՝ ուսուցիչը դասի նյութի հետ առնչվող որևէ կողմնակի բանով զբաղվելու ժամանակ չունի: Թող որ այդ կողմնակին ավելի կարևոր է, ավելի անհրաժեշտ: Նա չի կարող ստեղծագործաբար աշխատել, զբաղվել լրացուցիչ թեմաներով, որովհետև պետական ծրագիրը թույլ չի տալիս: Ավելացնենք, որ ուսուցչի գլխին ամեն րոպե կախված է ստուգվելու վտանգը: Չէ որ խստադեմ ստուգողը կարող է մանրակրկիտ կերպով հաշվել ժամերը և պահանջել՝ թե այսինչ թեմային ինչո՞ւ է մեկ ժամ պակաս հատկացվել:

Նշենք նաև, որ ուսումնական պլանները, ծրագրերը և դասագրքերը կազմում են տարբեր մասնագետներ: Ահա թե ինչու դրանց մեջ առկա է ոչ թե պահանջների կուռ միասնություն, այլ գործին խանգարող անհամապատասխանություն:

Դասագրքերը գրում են գիտնականները: Որտե՞ղ է նրանց անունների կողքին դպրոցը կատարելապես ճանաչող և նրա շահերի համար իսկապես ցավող համեստ մշակը՝ ուսուցիչը: Նա, ինչպես ամեն տեղ, այստեղ ևս անտեսված է: Խորապես հարգելով և բարձր գնահատելով մեր ճանաչված գիտնականներին, չենք կարող չնշել, որ գործնականորեն կապված չլինելով երեխայի, ուսուցչի և, առհասարակ, դասապրոցեսի հետ, նրանք լիարժեք պատկերացում չեն կարող ունենալ դպրոցի մասին, հետևաբար, չեն կարող կազմել կատարյալ դասագրքեր: Ուսումնական պլանները, ծրագրերը, դասագրքերը պետք է կազմվեն այնպես, որ արդյունքում ունենանք իրարից բխող, իրար լրացնող, ուսուցչին և աշակերտին մատչելի ծրագիր-դասագիրք:

Մի քանի խոսք ռուսերենից թարգմանվող դասագրքերի մասին: Հայ երեխան ֆիզիկա, քիմիա, կենսաբանություն և այլ առարկաներ սովորում է ռուսերենից թարգմանված դասագրքերով: Գեղարվեստական գրականությունը, եթե անգամ վատ է թարգմանված, մի կերպ կարդացվում է, Բայց դասագիրքը... Դասագրքերի թարգմանությունը կատարվում է ոչ առարկայագետ թարգմանչի կողմից, որի հետևանքով տեքստերը դառնում են ճապաղ, աղավաղված:

Հիշենք մեր մանկությունը: Ամեն տարեսկզբի սրտի ինչպիսի թրթիռով ենք բացել թեև անհրապույր, բայց մեր նոր դասագիրքը, ինչպես ենք խնամքով գործածել, որ այն չկեղտոտվի: Իսկ այսօ՞ր, փառաբանյալ մեր երկրում: Աշխարհում անտառանյութով ամենահարուստ մեր պետությունը մի՞թե ի վիճակի չէ ամեն տարի հրատարակել նոր դասագրքեր, որպեսզի երեխան դառը հիասթափությամբ ձեռքը չառնի քրքրված, խունացած, մի քանի երեխայի ձեռքով անցած և անընդհատ բարակած գիրքը: Գեղագիտության տեսանկյունից զատ՝ դա նաև հակահիգիենիկ է: Դասագիրքը պետք է ձգի երեխային, գրավի, կապի իր հետ: Մինչդեռ մեր դասագրքերը միայն վանում են, առիթ տալիս ծնողի իրավացի դժգոհությանը:

Այսօր հաճախ ենք լսում «Սովորողների մասնագիտական կողմնորոշում» արտահայտությունը: Իրականում դպրոցում որևէ բան արվո՞ւմ է երեխայի մասնագիտական կողմնորոշումը ճիշտ ընթացքի մեջ դնելու ուղղությամբ: Վստահ կարելի է ասել՝ գրեթե ոչինչ: Հայտնի է, որ երեխաների մի մասը դպրոցն ավարտելուց հետո բուհ չի ընդունվում: Դժվարին խնդիր է ծառանում նրա, ծնողների, ընտանիքի առջև: Ո՞ւր գնալ, որտե՞ղ աշխատել: Այդ հարցը չէր մտահոգի պատանուն կամ աղջկան, եթե նա կյանք մտներ իբրև որակյալ վարորդ կամ դեձակ, հյուսն կամ ատաղձագործ: Վերջին տարիներին երեխաներին որևէ մասնագիտության մեջ հմտացնելու նպատակով փորձեր արվեցին: Այսպես, շաբաթը մեկ օր նրանց ուղարկում ենք կցված հիմնարկ-ձեռնարկություններ կամ ուսումնական կոմբինատներ՝ մասնագիտական կողմնորոշման համար: Կյանքը ցույց է տալիս, որ դա անօգուտ, ինքնանպատակ միջոցառում է, որովհետև ինքը՝ գործարանը կամ ուսումնական կոմբինատը դրան պատրաստ չեն: Այստեղ չկան մանկավարժ-վարպետներ, անհրաժեշտ բարոյահոգեբանական միջավայր և վերջին հաշվով՝ շահագրգռություն: Աշակերտները, եթե անկեղծ խոսենք, այսպես ասած, միմիայն գլխացավանք են արտադրական կազմակերպության համար: Ասել է թե դպրոցն ի՛նքը պետք է ունենա համապատասխան նյութատեխնիկական բազա՝ արհեստանոցներ, որակյալ վարպետներ: Միայն այդ պայմաններում կարելի է ապահովել բարձրորակ մասնագետների պատրաստումը:

Մի քանի խոսք դպրոցի զարգացման հեռանկարների վերաբերյալ: Կարծում ենք, որ անհրաժեշտ է սովորողներին կողմնորոշել 9-րդ դասարանից՝ դարձյալ Արևմուտքի օրինակով երեխային հնարավորություն տալ ուսումնառության վերջին երկու տարում հրաժարվել որոշ առարկաներից և խորանալ նախասիրած առարկաների ուսումնասիրության մեջ: Ինչու՞ երեխային ստիպել սովորել մաթեմատիկա, եթե այն կյանքում նրան այլևս պետք չի գալու: Բավարար գիտելիքներ նա արդեն ստացել է մինչև 9-րդ դասարանը: Այդքանը նրան կյանքում բավական է: Ուրեմն 9-րդ դասարանից արդեն թող խորանա այն առարկաների մեջ, որոնց գծով հետագայում շարունակելու է ուսումը: Այս դեպքում միայն կունենանք մասնագիտորեն հմուտ և խորագիտակ կադրեր:

Որպես օրվա հրամայական է հնչում ազգային դպրոց ստեղծելու պահանջը: Մեր երեխաների ճնշող մեծամասնությունը սովորում է հայկական դպրոցներում: Նկատի պետք է ունենալ՝ հայկական, բայց ոչ ազգային: Ցավոք, այսօրվա դպրոցը մամլակով համահարթեցման ենթարկեց ազգային դպրոցի դարավոր սկզբունքները՝ սկիզբ դնելով մի նոր դպրության, որը սնվում էր ոչ ազգային տոհմիկ ակունքներից: Երեխային որպես հայ կրթել կկարողանանք այն դեպքում, երբ նրա մեջ մշակենք ազգային մտածողություն: Չսովորած իր ժողովրդի պատմությունը՝ նա ուսումնասիրում է ուրիշինը, բնության, աշխարհի մասին պատկերացում է կազմում՝ սովորելով թարգմանված գրքերով և բոլորովին անտեղյակ մնալով, թե իր հայրենակիցները ինչ ներդրում ունեն, ասենք, տիեզերքի նվաճման, քիմիական արդյունաբերության զարգացման, միջուկային ֆիզիկայի բնագավառներում: Եվ եթե խաթարվում է ազգային հիշողությունը, նրան չեն հուզում ազգային երգերը, պատմաճարտարապետական եզակի հուշարձանները, եթե նա պարզ պատկերացում չունի, թե որտեղ են գտնվում Տարոնը, Վասպուրականը, Տավուշը և այլն, ապա ի՞նչ հայրենասիրության մասին կարող է խոսք լինել: Մեր կարծիքով՝ երեխան հայ ժողովրդի պատմությունը պիտի ուսումնասիրի հենվելով ոչ միայն դասագրքի, այլև Խորենացու, Բուզանդի, Եղիշեի, Փարպեցու գիտական ուսումնասիրությունների վրա, դրանք օգտագործի որպես դասագրքի անքակտելի մաս:

Դպրոցը զուրկ է ինքնավարության տարրական իրավունքներից: Խոսքը քաղաքից դուրս արգելված էքսկուրսիաների մասին է: Երեխան զուրկ է դրանից, ուրեմն և՝ հայրենիքը ճանաչելու հնարավորությունից: Նա հայրենի վայրերի մասին գաղափար է կազմում լոկ կարդացածով, լավագույն դեպքում՝ նկարներով: Այնինչ որքան բան են տալիս հայրենագիտական դասերն այն վայրերում, որի մասին լսում է դպրոցականը: Վերջերս մեզ հաջողվեց մի այդպիսի դաս լսել Օշականում՝ Մ. Մաշտոցի տապանաքարի մոտ, ուր խմբերով արտասանվող այբ, բեն, գիմ-ը ակնածանքի սարսուռ էր ծնում ներկաների հոգում:

Չունենալով ինքնավարության իրավունք՝ դպրոցը տասնամյակներ աշխատեց որպես վարչահրամայական հրահանգների հլու կատարող՝ զուրկ ազգային, ինքնուրույն ստեղծագործական դիմագծից:

Ձգտելով փշրել մեզ կաշկանդող ամեն պայմանականություն՝ այս տարի նորովի ենք կազմակերպել մեր աշխատանքները՝ այն խարսխելով դպրոցի մշակած ծրագրերի և առավելապես ստեղծագործական հնարանքների վրա: Մեր խնդիրն է նախ դնել ազգային դպրոցի առաջին հիմնաքարերը: Իր իրավունքների մեջ կմտնեն արևմտահայերենը, արևմտահայ և սփյուռքահայ գրականության խորացված ուսուցումը:

Անցած ուսումնական տարում արդեն մեր դպրոցում կատարվել է այդպիսի աշխատանք: 6-րդ «Ա» դասարանում, որը կազմված է ընդունակ, լեզվական հակում ունեցող երեխաներից, անցկացվել են գրաբարին, միջին հայերենին, արևմտահայերենին նվիրված հետաքրքիր դասեր: Դրանց նպատակն է եղել ներկայացնել մայրենին իր պատմական զարգացման ընթացքի մեջ: Ընթերցողը կարող է զարմանալ՝ 6-րդ դասարանում գրաբա՞ր, արևմտահայերե՞ն: Այո, չենք ժխտում, դա

երևույթ է, եզակի փաստ և պատահական չէ, որ իր արձագանքները գտավ մտավորականության շրջանում և մամուլում: Չպետք է կարծել, թե այդ դասերին աշակերտները ծանոթանում են գրաբարի լեզվական կանոններին: Ո՛չ, դա կլիներ մերժելի, դասը կդարձներ խրթին, անմատչելի: Ուսուցչուհին գրաբարի մասին երեխաներին հետաքրքիր տեղեկություններ տալուց հետո սովորեցրել էր գեղեցիկ ու մատչելի ասույթներ: Աշակերտները բացատրում են յուրաքանչյուր ասույթ, դրանք կապում իրենց առօրյայի, կյանքի հետ, գրաբարով կատարում հնագույն երգեր, արտասանում Մաշտոց, Նարեկացի՝ իրենք իսկ հիացած ու խանդավառված մայրենիի շքեղությամբ:

Յուրահատուկ տոն էր արևմտահայերենին նվիրված դասը, ուր զուգակցվեցին բանաստեղծություն, արձակ, թատրոն ու երգ, քարտեզ և պատմություն: Եվ այս ամենն ունի մեկ նպատակ՝ երեխաներին սիրելի դարձնել մայրենին, նրանց դաստիարակել այն գիտակցությամբ, որ ինչպես ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում ասաց ընկ. Ս. Հարությունյանը, «Լեզուն ժողովրդի հոգին է, նրա անցին հոգևոր հարստությունը, նրա մշակույթը», որ «մայրենի լեզվի իմացությունը մարդու հոգևոր հարստության, ինտելիգենտության անհրաժեշտ պայմանն է»:

Նշենք, որ արևմտահայերենին նվիրված դասին ներկա էին գրողներ, լրագրողներ, սփյուռքահայ գործիչներ, որոնք դասի ձայնագրությունները տարան Բոստոն, Լոս Անջելես, Փարիզ, Կիպրոս, Բուենոս Այրես և այլուր:

Շուրջ 15 տարվա պատմություն ունի մեր դպրոցի «Վերնատուն» ուսուցչական գրական խմբակը, որն իր տեսակի մեջ ևս եզակի երևույթ է հանրապետությունում: Մեր չափազանց օգտավետ աշխատանքը՝ կենդանի միջոցառումներով, բարձրացնում է ուսուցչի ինքնակրթության մակարդակը, նրա ճաշակը, հնարավորություն ընձեռում մուտք գործել գրականության կախարդական աշխարհը: «Վերնատան» աշխատանքները ղեկավարում է հայոց լեզվի ու գրականության ուսուցչուհի Ռ. Նազարյանը: Խմբակն արդեն լայն ճանաչում է վայելում: Անցած ուսումնական տարում երեք անգամ ներկայացվել է հեռուստաէկրանից:

Ընթացիկ ուսումնական տարում կլրանում տարիներ առաջ ԽՍՀՄ մանկավարժական գիտությունների ակադեմիայի դպրոցների կահավորման և ուսուցման տեխնիկական միջոցների օգտագործման գիտահետազոտական ինստիտուտի կատարած փորձը: 1982—83 ուստարվանից այդ ինստիտուտը մեր դպրոցում փորձարարական աշխատանք է կազմակերպել իրենց մշակած դասավանդման նոր մեթոդների գործադրման արդյունավետությունը պարզելու նպատակով (ղեկավար՝ Գ. Գ. Լևիտաս): Աշակերտներին տրվում են տպագրական հիմքով տետրեր, կոնսպեկտներ, ինքնուրույն աշխատանքի գրքույկներ, ուսուցման լրացուցիչ միջոցներ: Տվյալ դասարանի ուսումնական նյութը բաժանվում է հիմնականում երկուական դասաժամի համար նախատեսված բաժինների: Առաջին դասին տրվում է մաթեմատիկական թելադրություն, երկրորդ դասին ստուգվում են աշակերտների կատարած աշխատանքը, տեսական գիտելիքները վերարտադրելու և դրանք կիրառելու կարողությունները, նախապատրաստվում և անցկացվում է ինքնուրույն աշխատանք: Դասի հագեցվածության շնորհիվ երեխայի մտածողությունն արագ է գործում: Աշակերտները տիրապետում են ուսումնական աշխատանք կատարելու նըպատակահարմար հնարների: Ուսուցման այդպիսի մեթոդները դասապրոցեսում ընդգրկում են բոլոր աշակերտներին: Դասի ընթացքում աշակերտների մեջ ձևավորվում են դրական հատկանիշներ՝ փոխօգնություն և միաժամանակ պահանջկոտություն միմյանց հանդեպ, պարտաճանաչություն, քննադատական վերաբերմունք սեփական անձի նկատմամբ: Ուսուցման մեկ ցիկլի ընթացքում 2—3 դաս, յուրաքանչյուր աշակերտ ստանում է 3—4 -ական գնահատական: Դպրոցի դիրեկցիան ձգտում է հասնել այն բանին, որ մաթեմատիկայի բոլոր ուսուցիչները ևս դասապրոցեսում առաջնորդվեն վերոհիշյալ մեթոդով:

Այս տարվանից մեր դպրոցում հետազոտական աշխատանքներ կծավալի նաև սոցիոլոգ-հոգեբանը: Հայտնի է, որ օբյեկտիվ և սուբյեկտիվ բնույթի մի շարք հանգամանքների բերումով ուսուցիչն այսօր պարզապես ի վիճակի չէ գործնականում իրագործելու դասարանի յուրաքանչյուր աշակերտի հանդեպ անհատական մոտեցման սկզբունքը: Արտասահմանյան մի շարք երկրներում (ԱՄՆ, Անգլիա և այլուր) նմանօրինակ խնդիրների լուծմանն է նպատակամղված այսպես կոչված «սոցիալական ծառայություն» համակարգը, որի օգնությամբ հաճույքով դիմում են և ուսուցիչները, և ծնողները: Ծառայության գործակալները, որոնք գիտական բարձր որակավորում ունեցող մասնագետներ են, իրենց դիմած ընտանիքի անդամների հետ երկարատև, անբռնազբոսիկ շփման ընթացքում ախտորոշում և միացյալ ջանքերով վերացնում են կոնֆլիկտային տվյալ իրավիճակի պատճառները:

Չենք կարող շրջանցել այն հայտնի ճշմարտությունը, որ երեխայի համար շաբաթ օրերին դպրոց գալը դժվար է այն դեպքում, երբ նա գիտե, որ ընտանիքի բոլոր անդամները տանն են, ազատ, իսկ ինքը պարտավոր է դասի ներկայանալ: Ավելորդ է նշել, որ երեխաներից շատերի հաճախումը դպրոց այդ օրերին խախտվում է ընտանիքներում անցկացվող զանազան խնջույքների և նրանց այլ վայրեր մեկնելու պատճառով: Սրանց հետևանքով դասապրոցեսը թերարժեք ու ինչ-որ չափով նպատակային համարվելուց հեռու է լինում: Բնականաբար, առաջացան դժվարություններ՝ կապված դասացուցակի հետ: Սակայն դրանք հաղթահարվեցին, յուրաքանչյուր առարկայի հատկացվեցին զույգ ժամեր, ինչպես արվում է բուհերում: Դրանով իսկ կրճատվեց օրվա ընթացքում երեխայի պատրաստելիք դասերի թիվը:

Կրթական համակարգի, ուսուցչի, դպրոցի մասին խոհերը, մտահոգությունները անչափ շատ են: Եվ այն, ինչ այսօր հուզում է մեզ, կարծում ենք հուզում է ողջ հասարակությանը: Այլ կերպ լինել չի կարող: Չէ որ նրա յուրաքանչյուր անդամ պարտադիր անցնում է դպրոցով և կրում նրա դրոշմը:

Միացյալ ուժերով աշխատենք մարդու ազազնվացման, նրա քաղաքացիական և ազգային դիմագծի ձևավորման, մայրենիի բյուրեղացման, սովորողների համակողմանի դաստիարակության ճշմարիտ ուղիներ գտնելու համար:

---

# ԳԵՂԱԳԻՏԱԿԱՆ ՃԱՇԱԿ. ԳՆԱՀԱՏԱԿԱՆ ԻԴԵԱԼԻ ԴԻՐՔԵՐԻՑ

**Ժ. ՎԱՐԴԱՆՈՎԱ**

ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻՈՐԵՆ ԶԱՐԳԱՑԱԾ, հոգեպես հարուստ անհատի ձևավորման միջոցներից մեկը հանդիսացող գեղագիտական ճաշակի յուրահատկության հետազոտումն այսօր անվիճելի տեսական հետաքրքրություն է ներկայացնում:

Գեղագիտական ճաշակը ոչ թե բնածին, կենսաբանորեն բնազդական, այլ բնության, սոցիալական իրականության և արվեստի երևույթներն ընկալելու և գնահատելու մարդու կարողությունն է: Դա սուբյեկտի ամբողջական դրսևորումն է գեղագիտականի նկատմամբ, անձի գնահատականը իդեալի դիրքերից:

Միանգամից նշենք, որ ճաշակի բնության մասին եղած բոլոր տարաձայնություններով հանդերձ, երևույթի տառացիորեն բոլոր հետազոտողներն այն ընդունում են իբրև մարդու ունակություն՝ ըմբռնելու, թե ինչն է գեղեցիկ և ինչը այլանդակ: Հաշվի առնելով դա, գեղագիտական ճաշակը բնութագրվում է որպես գնահատելու տարբերակված ունակություն: Նշանակում է, ճաշակը գեղագիտական ընկալման անհատական ունակության այն չափն է, որը որոշելով, ավելացնում ենք՝ «լավ», «վատ», «նուրբ», «զարգացած» ճաշակ և այլն: Հենց լավ զարգացած ճաշակն էլ իրականում ընկալվող առարկան ճշտորեն գտնում է գեղեցիկ, վեհ կամ անէական: Իսկ գնահատումն իր էությամբ միջնորդավորված գիտելիք է. այն պարտադիր կերպով ենթադրում է համադրում, համեմատում, հարաբերակցում:

Այսպես, եթե արդիականությունը մեկնաբանենք որպես համապատասխանություն ժամանակի (դարի կամ օրվա) պահանջմունքներին, առաջին պլանի վրա է դրվում գնահատականը. խոսքը ոչ թե ֆիզիկական, այլ սոցիալ-կուլտուրական ժամանակի մասին է, որը կարելի է ընդգրկել մի հայացքով և որի մեջ կարելի է կանգնեցնել ակնթարթը. կարելի է «տեղաշարժվել», օգտագործելով մարդկության կուտակած փորձը: Գեղագիտական գնահատականի մեջ դրսևորվում է, մի կողմից, այս կամ այն երևույթի նշանակալիությունը, մյուս կողմից, բնութագրվում է ինքը՝ գնահատող սուբյեկտը, նրա զարգացման մակարդակը՝ որպես գեղագիտական կուլտուրայի կարևորագույն ցուցանիշ:

Գեղագիտական զարգացումը նպատակամետ պրոցես է փոխադրելու հասարակության գեղագիտական կուլտուրայի մակարդակը անձի գեղագիտական կուլտուրայի մակարդակին և ընդհակ'առակը՝ հասարակությունը հարստացնել անձի եզակի կուլտուրայով, ձևավորել ստեղծարարորեն ակտիվ անհատ, ունակ օբյեկտիվորեն ճշմարտացի գնահատելու գեղագիտականը: Պատահական չէ, որ ճաշակի մարքսիստական տեսության հիմքում դրված է դրա ճշմարտացիության հարցը, այսինքն ճաշակի գնահատության համապատասխանումը առարկայի իրական բնույթին:

Որպես զուտ տեսական իմացություն, որը ստուգում է ճաշակը, ինչպես նաև առաջ անցնում նրանից, գեղագիտական հայացքներն ունեն մեծ նշանակություն, ներգործում են ճաշակի վրա, շտկելով և ուղղություն տալով նրա զարգացմանը: Այն դեպքերում, երբ մեր ճաշակը բախվում է անականկալ օբյեկտների, ինչը անկասկած տեղի է ունենում սոցիալական իրականության մեջ, իրենց իրավունքների մեջ են մտնում դատողությունները: Մարդու գեղագիտական հայացքները այդ անծանոթ ձևի մեջ «ճանաչում են» նմանության գծեր արդեն «յուրացված» գեղեցկության հետ և օգնում են օբյեկտիվորեն ճիշտ գնահատել գեղագիտական երևույթը:

Ճաշակի և պահանջմունքների կապը ավելի սերտ է, քան ճաշակի և հայացքների կապը. առանց գեղագիտական պահանջմունքների մարդը ճաշակ չունի: Գեղագիտական պահանջմունքը սուբյեկտի ակտիվության աղբյուրն է, անհատի զարգացման, առարկայական աշխարհի նկատմամբ նրա վերաբերմունքի ցուցանիշը: Հենց վերաբերմունքը՝ որպես օբյեկտիվորեն ճանաչված առարկայի գիտակցում, թույլ է տալիս որոշել գեղագիտական պահանջմունքը իբրև «ինքնարժեքավորում»: Եվ «մարդու ճաշակի մասին,— արդարացիորեն գրում է Ա. Ս. Մոլչանովան,— դատում են գեղագիտական հաճույքի մեջ ըստ նրա պահանջմունքների բավարարման առարկաների... Հենց պահանջմունքն է ճաշակին տալիս որոշակիություն և ընտրողականություն» (А. С. Молчанова. На вкус, на цвет... М., 1966, с. 41).

Բայց պահանջմունքը հոգեկանի այն կողմն է, որն անհատին ամենից ավելի սերտորեն է կապում հասարակությանը: Այն սոցիալապես վերին աստիճանի դետերմինացված է: Ինչպես հայտնի է, և սուբյեկտը առարկայի համար, և առարկան սուբյեկտի համար ծնվում են հանրային արտադրության պրոցեսում: Ճաշակը, որպես գեղագիտական պահանջմունքների անմիջական արտահայտություն, միջնորդավորված է լինում արտադրության, առաջին հերթին, գեղարվեստական արտադրության պրոցեսով: Ոչ ոք մարդուն չի սովորեցնի գնահատել արվեստի ստեղծագործությունները և գեղագիտականը իրականության մեջ, մինչև որ նրա մեջ չձևավորվեն գեղագիտական պահանջմունքներ: Հենց զարգացած պահանջմունքն է իր մեջ ընդգրկում դրա բավարարման միջոցների գիտակցումը:

Իր կուլտուրական պահանջմունքներով, դաստիարակությամբ, ընկալման փորձով ձգտելով դեպի այս կամ այն ստեղծագործությունը, մարդը ցուցաբերում է այն, ինչ հոգեբաններն անվանում են դիրքորոշում: Դիրքորոշումը մարդու հոգեկան կառուցվածքում առաջացող սուբյեկտի պատրաստակամությունն է որոշակի գործունեության՝ բավարարելու իր ունեցած պահանջմունքը: Կարծես անհատին դրդելով «օբյեկտը փոխադրելու սուբյեկտի վրա», դիրքորոշումը ձգտումներն ու գործողություններն ուղղում է դեպի նրա ունեցած պահանջմունքի բավարարման հունը: Հիմնադրույթից է կախված ընկալման յուրահատուկ համատեքստը, այս կամ այն տրամադրվածությունը, գեղագիտական «ենթատեքստը»: Անհատի նախորդ փորձը կապելով ընկալման տվյալ պահի հետ, դիրքորոշումը կանխորոշում է ինֆորմացիայի վերամշակման յուրահատկությունը. ընկալումը տեղի է ունենում «նրա լեզվով»: Օրինակ, Ա. Սոկուրովի «Մարիա», Ռ. Գևորգյանի «Կղզիներ», Ա. Խաչատրյանի «Կոնդ» բավական հաջողված վավերագրական ֆիլմերում մարմնավորված հետաքրքրությունները, կենսադիրքավորումները և իդեալները համընկնում են հնարավոր հանդիսատեսների ապրումներին ու զգացմունքներին: Բնությունը, իրադարձությունները, կենցաղի իրողությունները ֆիլմերի մեկնաբանություններն են, դրանց բացատրությունը, բովանդակությանը համահունչ երևույթների արդիականացումը: Այդ պատճառով էլ անհատի մեջ առաջնային են դառնում նրա պահանջմունքները. նա սկսում է «ապրել» «բարոյապես բարձրագույնի» մակարդակով որպես իդեալին հասնելու միջոցի:

Բնորոշելով երևույթի գեղագիտական արժեքավորությունը, մենք դրանով իսկ հաստատում ենք այդ երևույթի՝ գեղագիտական հաճույք պատճառելու ընդունակությունը: Մարդու ֆիզիկական ուժն ու առողջությունը, նրա կատարելությունն ու ճարպկությունը, նրա միտքն ու հնարամտությունը, խիզախությունն ու քաջությունը, նրա վարպետությունը իր ամենատարբեր դրսևորումներով մեզանից յուրաքանչյուրը միշտ գնահատում է գեղագիտորեն դրականորեն: Իսկ ամեն մի արժեքային հարաբերություն անհնար է պատկերացնել առանց ռեալ երևույթները իդեալի դիրքերից գնահատելու: Իր հերթին, «գեղագիտական իդեալ» հասկացության մեջ մենք մտցնում ենք որոշակի դարաշրջանի գեղագիտորեն զարգացած անհատի, աշխարհում մարդու ինքնահաստատման ձևերի ներդաշնակ զարգացման, անհատի և իրականության նկատմամբ հարաբերությունների դետերմինանտների մասին պատկերացումները: Այսպիսով, «գեղագիտական իդեալ» հասկացության մեջ մենք մտցնում ենք «գեղեցիկ մարդու գեղեցիկ աշխարհը»: Ընդ որում, գեղեցիկի իդեալի փոփոխականությունը ընկալելով որպես միանգամայն բնական երևույթ և պատմական փոփոխությունների անընդմիջությունը գիտակցելով որպես աշխարհայացքի անբաժանելի տարր, ժամանակակից մարդը սիրով իրեն ևս դիտում է իբրև անընդհատ կատարելագործման օբյեկտ: Գեղագիտորեն զարգացած սուբյեկտը, որը տվյալ դեպքում հանդես է գալիս որպես հասարակության կուլտուրայի՝ պատմականորեն ձևավորված գիտելիքների, պահանջմունքների, դիրքորոշումների կրող, անկասկած, հանդես կբերի գեղեցիկը ընկալելու ունակություն:

---

*ՎԱՐԴԱՆՈՎԱ ԺԱՍՄԻՆԱ ԱՐՏՅՈՄԻ— Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի փիլիսոփայության ամբիոնի դոցենտ, փիլիսոփայական գիտությունների թեկնածու:*

Իհարկե XX դարում աճել է առանձին անհատի դերը գեղագիտական իդեալի ձևավորման գործում, բայց դրանով դեռ ամենևին էլ չի ժխտվում նրա օբյեկտիվությունը ոչ միայն այսօրվա, այլև համամարդկային պատմության հանդեպ: Անկասկած, ներկայումս զգալիորեն նսեմացել է կանոնի, սկզբունքի դերը, բայց դա չի նշանակում դարերի միջով մեզ հասած ստեղծագործության անհասանելի նմուշների առկայության մտքի ժխտում:

Վերածննդի դարաշրջանի մարդու իդեալը Լեոնարդոյի «Ջոկոնդան» է, անհատի հոգևոր անսահման ազատության կերպարը, մի էակի, որի վրա չի տարածվում և ոչ մի սահմանափակում: Մոնա Լիզային վիճակված է արվեստի մեջ մնալ որպես մարդկային ազատ ոգու անսահմանության մի անմահ խորհրդանիշ, որ Լեոնարդոն դրել է մեր հայացքի առջև իբրև «անսպառելիության» առեղծված:

«Մարդկային էության» կատարյալ բացահայտման խնդրին է ծառայում նաև գեղագիտական ճաշակի ձևավորումը՝ որպես գեղեցկության չափանիշներով արարող ներդաշնակ անհատի ձևավորման գործոն: Ճաշակի բազմապիսի գնահատականների մեջ, որոնցում մարդը միաժամանակ հանդես է գալիս իբրև արտացոլման և իբրև պրակտիկայի սուբյեկտ, միշտ պետք է առանձնացնել այնպիսիք, որոնք ճիշտ են լոկ հարաբերականորեն, բայց այդուհանդերձ օբյեկտիվ են, ինչպես և այնպիսիք, որոնք օբյեկտիվ գեղագիտական բովանդակություն չեն պարունակում: Առաջին դեպքում մենք խոսում ենք այն ճաշակի զարգացածության աստիճանի մասին, որն ընդունում է այնպիսի տարբերություններ, որոնք գեղագիտական գրականության մեջ կոչվում են «նորմալ տարբերություններ»: Այսինքն, խոսքը ճաշակի ճշտության կամ մոտավորության, նրբության կամ գռեհկության, ճկունության կամ դոգմատիզմի մասին է և այլն: Իսկ երկրորդ դեպքում՝ ճաշակի բացակայության կամ նրա աղճատվածության մասին:

Եվ գեղագիտական գնահատականների բազմապիսությունը, որը կապված է ամեն մի գիտելիքի հարաբերականության հետ, ոչ թե գեղագիտական արտացոլման օբյեկտիվության հերքումն է, այլ իրականության ամեն մի արտացոլման դիալեկտիկական բնույթի հետևանքը: Ընդ որում, ճաշակի մասին դատողության կախվածությունը պատմականորեն կոնկրետ անհատից, գեղագիտական գնահատականը չի դարձնում կեղծ և սուբյեկտիվ: Ճաշակի մասին նման դատողությունը, որ կարող է լինել ճշմարիտ, օբյեկտին համապատասխանող, լավ ճաշակ է: Իսկ գեղագիտական օբյեկտի անհամազոր արտացոլումը՝ վատ ճաշակ: Հենց արտացոլման ճշտությունն է հնարավոր դարձնում տվյալ ճաշակը բնորոշելու իբրև լավ կամ վատ: Մնալով լավ ճաշակի շրջանակներում, որի համար հակացուցիչ է ինչպես անսկզբունքայնությունը, այնպես էլ կույր կտրականությունը, մարդը կարող է ունենալ սեփական հակումները գեղագիտականի աշխարհում՝ մի բան ավելի շատ է դուր գալիս, քան մեկ ուրիշը: Ճաշակն այստեղ հանդես է գալիս և իբրև ճանաչողության եղանակ, և իբրև գեղագիտական հաճույքի չափանիշ:

Իր հերթին չափի զգացումը, նորի զգացումը, իսկական գեղեցիկի ըմբռնումը, զզվանքը գռեհիկի նկատմամբ գործում են իբրև խորապես անհատական խթաններ: «Կուլտուրայի ոլորտը,— նշված է ԽՄԿԿ ծրագրում,— կոչված է... անհրաժեշտ հնարավորություններ ապահովել ժողովրդի ինքնագործ գեղարվեստական ստեղծագործության համար, զարգացնել ընդունակությունները, հարստացնել սոցիալիստական ապրելակերպը, ձևավորել առողջ պահանջմունքները և գեղագիտական բարձր ճաշակ»:

Ինչպես հայտնի է, Ի. Կանտը ձևակերպել է ճաշակի անտինոմիան, որտեղ նա հակադրում է երկու դրույթ. մի կողմից, «ամեն մեկն ունի իր ճաշակը», հետևաբար, ամեն մի բանավեճ ճաշակների մասին կլինի անպտուղ, ճաշակների մասին չեն վիճում. մյուս կողմից. «ճաշակի դատողությունը... ներհատուկ է նշանակալիության հավակնությունը յուրաքանչյուրի համար» (Кант И. Соч., в 6-ти томах, т. 5, М., 1966, с. 213): Մարդը «չպետք է այն (որևէ առարկա:— Ժ. Վ.) անվանի գեղեցիկ, եթե այն դուր է գալիս միայն իրեն» (նույն տեղը, էջ 214):

Ճաշակի դատողությունը բնութագրելով որպես բոլորի համար պարտադիր, Ի. Կանտը առաջ է քաշում նրա համընդհանրության պահանջը՝ առանց հասկացության միջնորդության: Սակայն որտեղի՞ց է համընդհանրությունը, եթե բացակայում է հասկացությունը: Փիլիսոփայի մտահղացմամբ, այդ համընդհանրության հիմքը «ճանաչողական ուժերի ազատ խաղն է»: Հենց «խաղի» վրա է խարսխվում այն «ընդհանուր զգացումը» (sensus communis)-ը, որը գեղագիտական գնահատականը պարտադիր է դարձնում բոլորի համար: Հետևաբար, ճաշակների մասին կարելի է վիճել:



Հարկավոր է մարդու մեջ անպայման դաստիարակել «անհամաձայնության կուլտուրա», նրան սովորեցնել հարգել նաև մեկ այլ ընկալում, սեփական գնահատական ունենալու յուրաքանչյուրի իրավունքը: Գեղագիտական գնահատականի մեջ դրսևորվում է, մի կողմից, այս կամ այն երևույթի նշանակալիությունը, իսկ մյուս կողմից՝ բնութագրվում է ինքը՝ գնահատող սուբյեկտը:

Առանձնապես ընդգծելով տվյալ հանգամանքը, պետք է նկատի ունենալ, որ այստեղ ավելի ու ավելի մեծ նշանակություն են ստանում այնպիսի գործոնները, ինչպես անձնական կենսապայմանները, գործունեության յուրահատկությունը, աշխատանքի բնույթը և այլն: Նշանավոր շատ կինոդերասաններ, օրինակ, մտել են ոչ միայն կինոյի, այլև նորաձևության պատմության մեջ: Ուրվագծին կիպ կպած առանց թևքերի (կամ կիմոնոյի տիպի կարճ թևքերով), ինչպես նաև առանց օձիքի լայն տարածում ստացած շապիկը մոդաների աշխարհում կոչում են Մառլոն Բրանդոյի շապիկ: Հենց դրանով նա նվաճեց հարմարավետ հագուստի սիրահարների սրտերը: Հավանաբար, կինոյի «աստղերի» մեծ մասի մոտ կգտնվի մի կոստյում, որը իր համբավով պարտական է հենց նրանց: Սակայն իսկական դերասանը միշտ էլ էկրանից մեզ բերում է ինչ-որ ավելի մեծ բան, քան ինչ-որ մի կոստյումի հասարակ մոդա: Նա միաժամանակ «թելադրում է» կյանքի ոճը, մաներաները, հայացքը իրերի նկատմամբ:

Դիմելով մեր կինոյին և նորաձևությանը, պետք է նկատել, որ մենք չունենք «աստղերի» համակարգ. երկար ժամանակ այդ երևույթը համարվում էր արատավոր, իսկ բուն հասկացությունը սովորաբար օգտագործվում էր նեգատիվ համատեքստում: Այժմ չի կարելի չխոստովանել, որ դա բավական մակերեսային դատողություն է. ըստ էության «աստղերի» բացակայությունը և անդեմությունը միմյանց մոտ հասկացություններ են: Մինչդեռ այսօր սուր կերպով զգացվում է անձնավորության դեֆիցիտը և կյանքում, և էկրանին, չէ որ իսկական «աստղը» ամենից առաջ աննկրկնելի անձնավորություն է:

Բնութագրելով անձը, գեղագիտական ճաշակը արտացոլում է գտնում ոչ միայն այն բանում, թե ինչպես է հագնված մարդը, ինչպիսիք են նրա մաներաները, ինչպես է նա խոսում, այլև պրոֆեսիոնալ գործունեության ոլորտում: Հենց գեղագիտականի միջոցով է, որ գործունեության ցանկացած տեսակում մարդը ձեռք է բերում հոգևոր և ֆիզիկական ուժերի դրսևորման կատարյալ ազատություն, զգալով իսկական երջանկություն:

Այսպես, գեղեցկության արարումը, որպես հոգևոր գործունեության արտահայտություն, չի կարող լինել զուտ կատարողական աշխատանք. այն պետք է լինի ստեղծագործություն: Պատահական չէ, որ Էյնշտեյնը գտնում էր, որ իբրև ստեղծագործական մտածողության տարրեր հանդես են գալիս ֆիզիկական իրողությունների շատ թե քիչ պարզ կերպարներ և նշաններ: Իսկ Էյզենշտեյնը, իր հերթին, գրում էր. «Կան բազմաթիվ նման օրինակներ, երբ ագռավի սև թևը ձյան վրա կամ ձիու դոփյունի ռիթմը, աքլորի կանչը կամ խածկտիկի երգը գունագեղ կամ հնչյունային բծից կարող են զարգանալ և դառնալ գաղափարախոսական ամբողջ կառուցվածքներ» (Эйзенштейн С. М. Избр. произв. в 6-ти томах, т. 4, М., 1966, с. 296):

Ոչ միայն մարդուն շրջապատող իրականության տրամաբանական ու զգայական ընկալումը նրա կողմից, այլև ինքը՝ հոգևոր պրոցեսը, զգայական է, տեսողական, կերպարային: Օրինակ, ելնելով այն բանից, որ կինոյի կերպարն ինքնին տեսողական է ու դինամիկ և, նշանակում է, կարող է արտացոլել հոգևոր պրոցեսի «պատկերայնությունը» և «տարածականությունը», ներկայիս կինեմատոգրաֆը որոնումներ է կատարում այդ ուղղությամբ: «Սուբյեկտիվ խցիկի» գեղարվեստական-գեղագիտական նշանակությունը Կարլո Բեռնարին բնութագրում է հետևյալ կերպ. «օբյեկտիվ իրականությունը հարստացել է նոր սուբյեկտիվացված օբյեկտիվ իրականությամբ» (Карло Бернари. Обогащение объективной реальности. «Искусство кино», № 7, 1965, с. 102).

Գեղագիտական արտահայտչականության նոր եղանակներ որոնելու գեղագետի իրավունքը հարգանքի և սիրո վկայությունն է արվեստի, ժամանակի նկատմամբ, որն ըմբռնված է որպես «մարդկային զարգացման տարածություն» (Կ. Մարքս), մարդու նկատմամբ: Գործնականորեն ոչ մի իսկական գեղագետ չի կարող սահմանափակվել ձեռք բերածով՝ իր հայտնագործած բնավորություններով, պրոբլեմատիկայով, եղանակներով: Նա պետք է ստեղծի նորը, արտացոլելով իր ժամանակը (հիշենք Օնորե Դոմիեի հպարտ արտահայտությունը. «Ես պատկանում եմ իմ ժամա-

նակին»), ժամանակակից գեղագիտական գիտակցության օրեցօր աճող պահանջմունքը, որին խորթ չեն ոչ նրբին ինտելեկտուալիզմը, ոչ էքսկուրսները դեպի պատմության բնագավառը կամ գեղարվեստական այլ կուլտուրաների աշխարհը:

Ժամանակակից մարդու գեղագիտական գիտակցության բարդության մասին, որը պարունակում է բազմաթիվ «պատմական շերտանստվածքներ», վառ պատկերացում են տալիս երբեմն մանկական գեղարվեստական ստեղծագործության որոշ ցուցահանդեսներ: Իբրև այդպիսի օրինակներից մեկը կարելի է նշել հնդիկ երեխաների նկարների ցուցահանդեսը, որ մի ժամանակ կազմակերպվել էր Երևանում: Ցուցահանդեսում ներկայացված էին տարբեր տարիքի, տարբեր դաստիարակության, տարբեր աստիճանի օժտվածության երեխաների աշխատանքներ, ինչը բնականաբար պայմանավորել էր դրանց որոշ խայտաբղետությունը, և որը, սակայն, հրատակորեն «տեղավորվում էր» պատմության մեջ եղած գեղարվեստական ոճերի շրջանակներում: Այսպես, ճապոնական պայմանական փորագրության կողքին կային ժամանակակից վերացական արվեստի ոճով արված նկարներ, մանկական անվարժ ձեռքով արված նկարների կողքին՝ «խիստ իմպրեսիոնիստական» ոգով կատարված բնանկարներ:

Եվ դա բացատրվում է ոչ թե պարզապես արտաքին ընդօրինակմամբ կամ ինքնատիպ մտածելու անկարողությամբ. պարզապես մանկական ստեղծագործության մեջ անգիտակցորեն-տարերայնորեն վերարտադրվում էին գեղագիտական աշխարհընկալման բոլոր այն տիպերը, որոնք տպավորվում էին մարդու գեղարվեստական մտածողության մեջ: Որքան ավելի լայնորեն է ծավալվում անհատի գործունեությունը, այնքան ավելի է զարգանում նրան շրջապատող երևույթների էությունը, ինչպես նաև իր սեփական էությունը գործնականորեն ու հոգեպես ըմբռնելու նրա կարողությունը: Այն եղանակը, որով գեղագետը իր ստեղծագործության մեջ արտահայտում է իր դիրքավորումը, որոշակի երևույթների գեղագիտական գնահատականն է:

Հայտնի է, որ արվեստի կենտրոնում միշտ էլ կանգնած է մարդկային անհատը, լինեն դրանք Պ. Սևակի հատկապես մարդուն նվիրված բանաստեղծությունները, որոնց մեջ զգացվում է Նարեկացու «Ողբերգության մատյանի» ջերմ շունչը և անհատի արժեքը հաստատող հայ հին նոմինալիստ-փիլիսոփաների պաթոսը, թե Մ. Ավետիսյանի «ամայի» բնանկարները:

Իսկական արարումը միշտ էլ ստեղծում է այնպիսի արժեքներ, որոնք ամենից ավելի են համապատասխանում «մարդկային ուժերի էութենական» (Կ. Մարքս) բացահայտման պահանջմունքներին, այսինքն՝ այնպիսի ուժերի, որոնց օգնությամբ մարդը ստեղծում է «երկրորդ բնություն»՝ որպես իր ծաղկման ու ամբողջ հասարակության առաջընթացի հիմքը: Ըստ Վ. Ի. Լենինի հասարակության մեջ կյանքի (գեղեցկության) իդեալը պետք է համընկնի բուն իրականության օբյեկտիվ միտումներին:

Մոր կերպարը Կ. Պետրով-Վոդկինի մոտ («Մայրը»), որը եթե անվանենք «Գեղջկական տիրամայր» և Մ. Սավիցկու «Պարտիզանական տիրամայրը» արմատապես տարբերվում են «հին» արվեստի տիրամայրերից: Եվ այդ տարբերությունը ամենից առաջ պետք է որոնել ոչ թե կերպարային լուծման մանրամասներում, այլ գեղագիտական ապրումի բուն հաղորդման մեջ, գեղագիտական ճաշակի բնույթի մեջ: Իդեալական կերպարը անշուշտ իրական է և կատարյալ: Հիշելով, որ յուրաքանչյուր դարաշրջան յուրովի է լսում և տեսնում կյանքը արվեստում, Վ. Ի. Լենինը առաջին տեղում է դնում գեղարվեստական ստեղծագործությունների ներգործությունը հենց «զգացմունքի» վրա և դրա միջոցով արդեն «մասսաների կամքի ու մտքի» վրա: Այս իմաստով առանձնապես ուշագրավ են Մ. Սարյանի բնանկարները, որոնք իսկական, իրական, այլ ոչ թե փաստագրական Հայաստանն են («Լեռներ», «Գարնանային օր» և այլն): Նկարչի կտավներին ներհատուկ են փիլիսոփայական խոր մտորումները բնության էության մասին, նրա վեհության ու մնունմենտալության զգացողությունը: Նման բնանկարները ցանկություն են արթնացնում թափանցել մեզ շրջապատող միջավայրի բյուր գաղտնիքների մեջ, օգնում են հասկանալ նրա երևույթների կապը: Իսկ չէ որ առանց հոգևոր արմատները զգալու, առանց մշակութային նստակեցության, ինչպես նկատել է ակադեմիկոս Դ. Ս. Լիխաչովը, չի կարող ձևավորվել նաև քաղաքացու զգացումը:

Արժեքների սպառման այս կամ այն տիպը մեծ չափով որոշվում է գեղագիտական ճաշակի մակարդակով և բովանդակությամբ: Ընդ որում, կեցության ու մտա-



ծողության նոր եղանակի ձեռքբերումը մի կողմ չի շպրտում տառապանքով ձեռք բերված արժեքները. անհրաժեշտ կլինի դրանք նորովի ընթերցել, դրանք մտցնել նոր համատեքստերի մեջ: Գեղագիտական յուրացման պրոցեսում, որն իր մեջ ընդգրկում է ինչպես հետազոտվող օբյեկտը, այնպես էլ մարդկային գործունեությունը, իր իրական տեղն է գտնում նաև գեղագիտական ճաշակը:

Ջնջիր ամեն պատահական գիծ
Եվ դու կտեսնես, որ գեղեցիկ է աշխարհը,—
գրել է Ա. Բլոկը:

Ակնհայտ է, որ գեղարվեստական նշանակալիության չափանիշը ոչ թե պարզ թվաքանակի մեծամասնության ճաշակն է, այլ հասարակական սուբյեկտի: Այսինքն, այստեղ կարևոր նշանակություն է ստանում գեղագիտական ճաշակը որպես անհատի տարբեր կողմերի ամբողջական միասնություն: Վերջինիս համաձայն այն բնորոշվում է անհատի հոգևոր աշխարհի զարգացմամբ:

Բավարար զարգացած գեղագիտական ճաշակը կենցաղում և արտադրության
մեջ մարդկային փոխհարաբերությունների հումանացման, հաղորդակցման մեջ
տակտի անհրաժեշտ պայմանն է, իսկ գեղագիտական ճաշակի դերի ըմբռնումը, որի
մեջ արտացոլվում են անհատի կուլտուրական մակարդակը, աշխարհայացքը և գա-
ղափարախոսական ուղղվածությունը, յուրովի է հարստացնում հասարակական կյան-
քի զարգացման պրակտիկան: Իր հերթին ինքը՝ հասարակական առաջադիմությունը,
գեղագիտական իդեալի հիմքն է, որը իրենից ներկայացնում է իդեալականի և իրա-
կանի, նպատակի ու դրա իրականացման միջոցների միասնությունը:

Մի կողմից, կյանքում արդեն մարմնավորվել են այդ իդեալի այս կամ այն գծերը, իսկ մյուս կողմից, նրանում կա այն, ինչը դեռ չկա կյանքում, բայց ինչին հարկավոր է ձգտել: Այս ամենը դրսևորվում է իդեալի մեջ. հենց այստեղ է վերահարկառուցման կենդանի նյարդը, նրա խորքային իմաստը և աշխարհայացքային կողմնորոշիչը:

# ՎԱՀՐԱՄ ՓԱՓԱԶՅԱՆԻ ԳՐԻՉԸ

**Գ. ԱԲԱՋՅԱՆ**

*ԶԳՐՎԱԾ ՄԻ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆ* է, կարծես, որ արվեստագետ դերասանը ստեղծագործական որոշակի ճանապարհ անցնելուց հետո գրիչ է վերցնում՝ իր ապրած օրերի հուշը հետնորդներին թողնելու ազնիվ դիտավորությամբ: Սա մի պարագա է, որ հոգեբանորեն արդարացում ունի: Չէ որ դերասանից հետո նրա արվեստից շոշափելի ոչինչ չի մնում կենդանի ընկալման համար, իսկ հաճախ էլ անցնում է ավելի շուտ, քան մահկանացու դերասանը: Փակվեց վարագույրը, և այլևս հնարավոր չէ տեսնել, լսել, զգալ դերասանի արվեստը: Դերասանի ողբերգությունն էլ նրա արվեստի հենց այս անցավոր բնույթն է:

Աշխարհի խաչաձև ճամփեքի վրա անկանգառ, խելահեղ մի վազքից հետո Վ. Փափազյանն էլ գրեց իր գիրքը՝ «Աշխարհի բեմերում» վերտառությամբ, որը լույս տեսավ 1937 թ., այն էլ՝ ռուսերեն: Փափազյանական պարադոքս, իրոք:

Ինչպե՞ս կարող էր Մուրադ—Ռաֆայելյան կրթական հաստատության սանը՝ սնված մեսրոպատառ գրերով, գիրք գրել մեկ այլ լեզվով, որին հազիվ ծանոթ էր:

Դժվար չէ պատասխան գտնել այս հարցին:

Երեսունական թվականներին Վ. Փափազյանի գործունեության տարածքը անծայրածիր Ռուսաստանն էր, ողջ խորհրդային երկիրը, մշտական բնակության վայրը՝ Լենինգրադը: Այստեղ նա շրջապատված էր նրբանկատ, նրբամիտ ռուս արվեստագետներով, որոնք չէին կարող չտեսնել, որ իրենց առջև կանգնած է ոչ միայն դերասան, այլև մեծ մտածող, փիլիսոփա արվեստագետ, կատարյալ մի հանրագետ, որի մտորումները, արվեստի նրա ըմբռնումները թղթին հանձնելը մեծ ծառայություն կլինի խորհրդային, մասնավորաբար ռուսական թատերագիտությանը: Այդ նրանց հորդորով էր, որ Վ. Փափազյանը գրեց «Աշխարհի բեմերում» գիրքը, և ռուսական թատերական քննադատությունը այն գնահատեց իբրև «մի ողջ դարաշրջանի մարտական փաստաթուղթ»: Եվ եթե Փափազյանը այս գրքից բացի ոչինչ չգրեր, միևնույն է «Աշխարհի բեմերումը» կմնար իր տեսակի մեջ լավագույններից մեկը: Գրքում կան բազմաթիվ էջեր՝ նվիրված ռուսական բեմարվեստին ու թատրոնի մարդկանց, այնպիսի փայլուն վերլուծություններ, որ հայ ընթերցողը իրեն հայտնի փափազյանական գրքերում չի հանդիպի: Մինչև իսկ ռուսաց լեզվի արտահայտչական նրբերանգները չեն վրիպել արտիստի ուշադրությունից, մի բան, որ մատչելի չպետք է լիներ նրան՝ լեզուն չիմանալու պատճառով: «Երգայնությունը,—գրում է Փափազյանը,—բնորոշ է ֆրանսիական լեզվին, նրա ֆոնետիկային, կշռույթին, նրա բառամթերքի կառուցվածքին: Այդ իսկ պատճառով էլ ֆրանսիացի դերասանը Կոռնելին, Ռասինին, նույնիսկ Հյուգոյին ներկայացնելիս, նրանց չափաբերական տողը արտաբերելիս հարկադրաբար պետք է դիմի արտաբերման այդ եղանակին, պետք է իր խոսքին երգայնություն հաղորդի անպայման, որը ոչ միայն ֆրանսերենի անտրոհելի հատկանիշն է, այլև Կոռնելի, Ռասինի և կամ Հյուգոյի տաղի ու չափաբերության շաղախը: Խոսքի նման ելևէջային և կըշռույթային բնույթը հարկադրում է ֆրանսիացի դերասանին համապատասխանաբար կարգավորել իր շնչառությունը, այս էլ իր կարգին ստիպում է համապատասխան շարժում և ժեստ, և եթե կուզեք՝ նաև բեմական կեցվածք: Սակայն ռուս դերասանը վերոհիշյալ հեղինակների գործերը ներկայացնելիս ենթակա է իր մայրենի լեզվի արտաբերման և ֆոնետիկ օրինաչափություններին: Մեծ, շատ մեծ սխալ կլինի, եթե նա հետևի ֆրանսիացի դերասանի օրինակին, որովհետև ռուսերենն ու ֆրանսերենը լեզվաբանական օրինաչափությունների իմաստով տրամագծորեն հակառակ բևեռներ են»:

Այս քաղվածքը առնված է «Աշխարհի բեմերում» գրքի այն էջերից, որոնք վերաբերում են լենինգրադյան դերասանների խոսքարվեստին, պակասավորին ու թյուր ըմբռնողությանը: Այժմ կարելի է պատկերացնել, թե որքան խորն են ռուս թատրոնին ու նրա երևելի գործիչներին արտիստի տված բնութագրերը, որոնք շարադրված են գրքի տասնյակ էջերում:

Անըմբռնելին լոկ այն է, թե ինչու մինչև այսօր Փափազյանի այս գիրքը չի հրամցվել հայ ընթերցողին մայրենի լեզվով, և կարծես մտադրություն էլ չկա այդ անելու: Անհասկանալի է, թե ինչու մեր հրատարակիչները չեն մտածում վերականգնելու գրքի բնագիրը: Այո, բնագիրը՝ առանց չակերտների մեջ առնելու այս բառը: Չէ

ԱԲԱՋՅԱՆ ԳԵՎՈՐԳ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԻ— *Արվեստի վաստակավոր գործիչ, բանասիրական գիտությունների թեկնածու:*



որ գիրքը մտածված է հայերեն, թելադրված՝ ֆրանսերեն, շարադրված՝ ռուսերեն: Իսկ վերականգնել հարկավոր է, հենց թեկուզ արտիստի գրական ժառանգությունը ամբողջացնելու համար:

Եվ եթե Վ. Փափազյանի գրական ժառանգությունը այս գրքով իր վերջակետն ունենար, այսօր հազիվ թե որևէ մեկը գրիչ առներ՝ խոսելու արտիստի գրչի և կամ նրա գրական ժառանգության մասին ...

Վ. Փափազյանը, իբրև արտիստ, անկշռելի մի վաստակով փակեց իր պարտամուրհակները մայր ժողովրդի հանդեպ, մարեց հավելումով: Հայ մեծ դերասաններից և ոչ ոք այնքան տևական մի միջոցի, աշխարհագրական այդքան ընդարձակ տարածքների վրա չի ստիպել օտարներին գլուխ խոնարհել հայ արվեստի կատարելության առաջ, ինչպես այդ արեց Փափազյանը: Սա արտիստի վիթխարի ծառայությունն էր մայր ժողովրդին, նրա հայրենասիրական առաքելությունն ու սխրանքը: Եվ ժողովուրդը գոհացած սրտով փառաբանեց իր քանքարավոր զավակին՝ այլևս առանց ակնկալիքի: Ու երբ թվում էր, թե նա վերջակետել է իր ստեղծագործ կյանքը և կարող է հանգիստ առնել իր նվաճած բազում դափնիների շուքի տակ, նույն այդ ժամանակ, անսպասելիորեն, նա ընթերցողի սեղանին դրեց իր գրքերը՝ «Հետադարձ հայացք» (Ա և Բ հատորներ), «Իմ Օթելլոն», «Համլետը՝ ինչպես տեսա», «Լիր արքան», «Սրտիս պարտքը», «Անահիտը» և մի քանի տասնյակ հոդվածներ ու ուսումնասիրություններ, որոնք լույս տեսան հայրենի և սփյուռքահայ պարբերականներում: Առեղծված էր Վ. Փափազյանը, և նրա գրքերը եղան դերասանի էության խորքերում ապրող առեղծվածայինի վերջին և ուժգին ժայթքումը, թերևս նույնքան թանկ, որքան նրա դերասանական արվեստը, միայն թե... այլևս անկորնչելի:

50—ական թվականների վերջերին հայ գրական անդաստանում Վ. Փափազյանը հայտնվեց այնպիսի պայծառությամբ, ինչպես արտիստն էր երևացել մեր թատրոնի երկնակամարում ուղիղ կես դար առաջ՝ 1910-ական թվականներին: Արտիստի գրական մուտքը եղավ այնքան շռնդալից, այնքան երևութական, որ ակամա իրենց հայացքները նրան դարձրին ոչ միայն գրականության ու արվեստի գործիչները, այլև ամենատարբեր զբաղմունքի տեր մարդիկ՝ պարզ ընթերցողից մինչև վաճառականները: Ինչու՞ Վ. Փափազյանը գրիչ վերցրեց իր կյանքի մայրամուտին, երբ ոչ հորդորներ կային և ո չ էլ ակնկալողներ: Մեկից ավելի են պատճառները:

«Հրատարակված էջեր ունենալու համար չէ, որ գրեցի այս գիրքը, այլ քեզ՝ ինձ ծնող, իմ հարազատ ժողովուրդ, նվիրել ցանկացա բազում տարիների իմ վաստակը իմ օրերի մայրամուտին»: Արտիստի այս խոստովանությունը իր գործի բարոյական արդյունքին միշտ մի նոր բան հավելելու՝ մեծ մարդկանց հատուկ գիտակցման թելադրանքն է, հետևաբար և՝ գրիչ առնելու պատճառ: Բայց կար պատճառների պատճառը՝ դերասանի առաջացած տարիքը: Դերասանական արվեստը ուղղակիորեն առնչված է արվեստագետի մարմնական կորովի հետ. որքան առաջանում է տարիքը, այնքան ավելի տկարանում է «նժույգը» և դժվարանում է կրել բյուրեղացած մտքի ծանրությունը: Վրա է հասնում մտքի և մարմնի, արտիստի բառերով ասած՝ «Նժույգի և հեծյալի» պառակտումը, անհամապատասխանությունը: Բնության պարզ օրինաչափությունը Փափազյանին կանգնեցրեց այս սահմանագծի վրա, երբ այլևս չէր կարող բեմից երբեմնի ուժով իր հրեղեն խոսքն ասել աշխարհին ու մարդկանց: Բայց նա այն անհանգիստ հոգին էր, որ չէր կարող չխոսել աշխարհի հետ, քանի շնչում էր: «Բնածին գործունեությունը,— գրել է Փափազյանը,— հարկադրում է մարդուն իր ասելիքն ասելու այլ միջոց գտնել»: Եվ արտիստը գտավ միջոցը՝ գրիչը:

Վ. Փափազյանի գրքերի հանդեպ ընթերցողի հիացմունքի մեջ, անշուշտ, կար դերասանի կախարդական հմայքը, բայց հիմնականը գրքերի բովանդակության բացառիկ հարստությունն է, գրության արվեստը, աննախադեպ լեզուն: Փափազյանի գրքերը եղան շարունակությունն ու հանրագումարը, ամփոփումն այն հրեղեն խոսքի, որ երկար տարիներ ավետեց բեմից, դարձան իր բեմական արվեստի առեղծվածների բացատրությունները, ապրած փոթորկոտ կյանքի տարեգրությունը, վերջապես, իր արվեստի շըքեղ անդրադարձը թղթի վրա:

Վ. Փափազյանը արվեստը դիտեց իբրև մարդկային բանականության բարձրագույն դրսևորումներից մեկը, աշխարհի ճանաչելիության զորավոր մի միջոց, իբրև *մարդագիտություն*: Այս հիմնադրույթի վրա էր խարսխված արտիստի աշխարհայացքը, այս հիմքի վրա բարձրացան նրա գեղագիտական ուսմունքն ու տեսական միտքը: Փափազյանի խորունկ համոզմամբ բեմահարթակը ամբողջ աշխարհն է, աշխարհի անխառն հայելին, որի կենտրոնում կանգնած է մարդը ինքը: Մարդն ինքնին ողջ տիեզերքն է, և տիեզերքը ոչ միայն ցոլանում է մարդու մեջ, այլև բացատրվում է մարդով: Այսպիսին էր արտիստի հավատո հանգանակը: Եվ փիլիսոփա արվեստագետը ստեղծեց մարդու իր սեփական տեսիլը, որը ենթակա չէ սովորական չափանիշների: Նա մարդուն չտեսավ սոսկ ծննդյան ու մահվան թվականների փակագծերով անջատված տարիների գումարի մեջ, որ բնությունը սահմանում է ամեն մահկանացուի համար՝ մեկին շատ, մյուսին քիչ: Փափազյանը մարդուն դիտեց իր հավերժական գոյության մեջ, մարդ, որ եղել է անհիշելի ժամանակներից, կա և լինելու է այնքան ժամանակ, քանի կլինի կյանքը մոլորակի վրա:

Մարդու հավերժական գոյության բացատրու-

թյունն էր Փափազյանի դերասանական արվեստը: Կարո՞ղ էր արտիստը բացատրել մարդու այս տիտանական կերպարը, եթե նա իր մեջ չկուտակեր մարդկային ուղեղի բոլոր արարումները: Որքան էլ նա օժտված լիներ բեմական ներքին ու արտաքին գերթանկ շնորհներով, որոնք դերասանական արվեստի հիմքերն են, միևնույն է, առանց հանճարեղ մտքի չէր կարող հասնել արվեստի վերին սահմաններին, չէր կարող հետամուտ լինել մարդու մեջ տիեզերական ներդաշնակությանը, ինչը նրա բեմական արվեստի խորհուրդն էր խորին: Այս ամենի գրավոր տարբերակներն են Փափազյանի գրքերը, մեծ մարդասերի ու հայրենասերի խոհերի ամփոփումները: Ահա թե ինչու Վ. Փափազյանի գրքերն անհնար է ամփոփել որևէ գրական ժանրի նեղ կաղապարի մեջ, իսկ եթե անհրաժեշտ է անպայման որոշել ժանրը, ապա այն պիտի ունենա «Մարդը և մարդու աշխարհը» անունը: Փափազյանի գրքերի անօրինակ, անափ ընդգրկումը ուղիղ համեմատական է մարդու փափազյանական վիթխարի տեսիլին, և նրա գրքերը ավելի շուտ յուրօրինակ գեղարվեստական հանրագիտություններ են:

Բայց եթե Փափազյանի գրքերի հարստությունը, ընդգրկումների ընդարձակությանը կարելի է հասնել գիտնականների ջանքերի, տևական ուսումնասիրությունների շնորհիվ, ապա կա մի բան, որ անհասանելի է: Դա Փափազյանի գրչության արվեստն է, նրա լեզուն, լեզվամտածողությունը, ոճն ու գրելակերպը, որ իրենն է և ուրիշինը լինել չի կարող:

«Լեզուն մի ժողովրդի հոգին է իր հնչեղ ձևի մեջ: Նա շոշափելի չլինելով հանդերձ՝ շոշափելի է իր լսելիությամբ: Բնույթով լինելով անտեսանելի՝ տեսանելի է, սակայն, իր ըմբռնողությամբ: Լեզուն ինքը ժողովուրդն է, նրա կենդանի շունչը, և կյանք է շունչը»— այսպիսին է լեզվի փափազյանական բնորոշումը: Եվ ամենից առաջ նրա լեզուն է այդ «հոգին», «կենդանի շունչը»: Եվ իրոք, արտիստի գրավոր խոսքը ընդհուպ մոտեցած է կենդանի, բանավոր խոսքին: Ու երբ մենության մեջ ընթերցողը թերթում է Փափազյանի գրքերը, նրան թվում է, թե իր դիմաց նստած է հեղինակը և մտերմիկ զրուցում է իր հետ: Նա շարունակ զգում է հեղինակի ներկայությունը: Ժամանակակիցներիս համար գաղտնիք չէ, որ արտիստը իր մտքերը թղթին էր հանձնում ոչ սեփական ձեռքով, այլ թելադրում էր սղագրուհիներին: Իսկ բանավոր խոսքը, որքան էլ աղքատ լինեն խոսողի արտահայտչամիջոցները, առավել է գրավորից և ունի լեզվական երաժշտություն, ելևէջումներ, նրբերանգներ ու հնչերանգներ, որոնք չեն կարող հասնել լսողին գրավորի դեպքում: Եվ հետո՝ կենդանի խոսքը միայն լսելին չէ, նաև տեսանելին է՝ խոսողի շարժումները, դիմախաղը, ձեռքերի «լեզուն» և այլն: Սրանք նույնքան արտահայտիչ են, որքան լսելի խոսքը, իսկ երբեմն էլ այնքան պերճախոս, որ ասում են այն, ինչ հնարավոր չէ ասել բառերով: Եվ այդ անհնարինը դերասանը բեմում ասում էր երբեմն մեկ շարժումով, մեկ հայացքով, դեմքի հանկարծակի այլափոխությամբ, մեկ ձայնարկությամբ: Այդ ամենապատում «լեզուն», բնականաբար, հնչել չէր կարող գրավոր խոսքում. ամեն պարագայի Փափազյանը գտնում էր հատուցման միջոցը, բառը, պատկերը, շեշտը, միտքը ծայրագույնս շիկացնելու, թանձրացնելու եղանակը: «Խուլ էր Բեթհովենը, բայց նա լսեց սիմֆոնիան»: Սեղմ, շատ սովորական մի նախադասություն, և սակայն նրբամիտ ընթերցողը չի կարող չլսել տրամաբանական շեշտի շառաչը, որ ընկած է «նա» դերանվան վրա: Ահա այդ կաղապարե շեշտի շնորհիվ ընթերցողի գիտակցությանն է հասնում այն միտքը, թե Բեթհովենն էր մեծագույն սիմֆոնիստը: Ու եթե այս նախադասությունից բացառենք «նա» դերանունը, կմարի նախադասության ներքին կրակը: «Խուլ է Բեթհովենը, բայց... լսեց սիմֆոնիան» նախադասությունը այլևս չունի հեղինակի ասելիքի իմաստը:

Շեքսպիրի մեծ ողբերգության ավարտին Համլետը արտաբերում է վարագույրն իջեցնող նախադասությունը. «Գնանք, Հորացիո, ժամանակըն իր շավղից դուրս է սայթաքե՜լ, Օ, բախտ իմ դժխեմ, ինչու ծնվեցի, որ հենց ես ուղղեմ»: Այս նախադասությունն արտաբերելիս Փափազյանը արնին շեշտի տակ էր առնում «սայթաքել» բառը, մասնատում, կտրատում, տևական հնչեցնում՝ «սա՜յ-թա՛-քե՛լ» և ձգում այնքան, մինչև արձագանքը կախվում էր դահլիճի կամարների տակ, թափանցում հանդիսատեսի գիտակցության մեջ՝ պարզելով շեքսպիրյան ողբերգության բուն իմաստը, այն, որ «Համլետը» այլ բան չէ, քան «շավղից սայթաքած» ժամանակների ողբերգական պատմություն:

Ընդհանրացման վիթխարի ուժը, որ արտիստն էր բեմում, անցել է նրա գրավոր խոսքին: Վերացարկված մտածողության բարձրերին հասնելու կարողությունը դերասանի գրավոր խոսքի, լեզվի ու ոճի անտրոհելի հատկանիշներն են:

Արտիստի գրավոր խոսքը ունի մի հատկանիշ ևս՝ փոխանցված բեմից, որ կարելի է կոչել արձագանքվող խոսք: «Եվ միակ հնարավոր բացատրությունը Սիրանույշի արվեստի, ըստ իս, մի երկյուղած լռություն է»: Այս նախադասության վերջին երկու՝ «երկյուղած լռություն» բառերը ընթերցողի մտապատկերում փոխվում են զիլ արձագանքի, խթանում նրա երևակայության թռիչքը, և ամեն ոք տեսնում է դերասանուհու մեծությունը ոչ քննադատի զուտ դատողությունների միջոցով, այլ իր ընկալումների, երևակայության, հոգեկան կերտվածքի, իմացության կարողությունների սահմաններում, ինչը տեսնել չէր կարող Սիրանույշին նվիրված բատվար գրքերում: Արձագանքվող խոսքի ուժը հատկապես շոշափելի ու ցայտուն է երևում փափազյանական նժարումներում ու գնահատա-



կաններում, որին քիչ կամ բնավ չի կարելի հանդիպել մեր գրական ու թատերական քննադատության, երաժշտագիտության, նկարչագիտության հազարավոր էջերում: Օրինակներն ավելին են ասում, քան երկարաշունչ բացատրությունները:

«Երվանդ Օտյանը՝ այդ ոսկեշուրթ փիլիսոփա երգիծաբանը... ծիծաղ դրեց բնույթով խոժոռ ու լացակումած հայի շրթունքին, որ արցունքի ու արյան հովտում՝ Պոլսում, որը օրրանն ու գերեզմանը եղավ մի մեծ հայության դարավոր կուլտուրայի, հայը սովորեց մեռնել ծիծաղով»:

Դժվար չէ տեսնել, որ արտիստի այս բնութագրումը դուրս է գրականագիտական ընդունված գնահատականների շրջանակներից, Օտյանի գործի վերացարկումն ու ոգեղենացումն է, ոգին և ոչ տառը: Նույն ոգեղենացումը և Չարենցին նվիրված տողերում: «Մեր ազգի մեծագույն և արժեքավոր մի հատվածի կործանումին ականատես այդ մարդը՝ Եղիշեն, աշխարհասասան մի ցասումի համառ կուտակումն էր, ինչպես և չտեսնված մի վրեժի ամենակործան պոռթկումը»: Փափազյանի այս տողերում Չարենցի քնարի ոգին է գծված երկնակամարի անհուն պաստառի վրա և ոչ տառը: Ահա և Կոմիտասը արտիստի հայացքի դիմաց: «Հեռվից եկող մի ձայն էր այդ նվագը...Ցեղային գիտակցությանս անհայտ ծալքերից ձայնող ինչ-որ կանչ, որ եթե նվագ էր, ապա և խոսք միևնույն ժամանակ... Եվ հետագայում, արդեն կյանքի կովում բովված մարդ, երբ կասկածոտ ու չար ժամերիս կարիք էի զգում ինքս ինձ գտնել, երբ օրերի շփոթի մեջ մոլորված, անխուսափելի անծանոթի առաջ շլմորած կարիք էր լինում հարց տալ ինձ, թե ով եմ և որտեղից, բնազդաբար այդ հեռավոր երգի հիշատակին էի դիմում... Գոյությանս շփոթի մեջ գտնելու համար անսըխալ ճանապարհներն իմ էության: Եվ այդ երգը, սքեմի սուգով բրծված այդ հոյակապ աղաղակը, որ Կոմիտասի հոգու ձայնն էր, իմ հոգնած ժամերի անդավաճան ստուգատեսը եղավ...»: Ահա թե ինչպես է ընդհանրացնում Կոմիտասի պատմական ծառայությունը հայ ժողովրդին, բացատրում նրա գործի ու առաքելության մեծ խորհուրդը:

Դարձյալ մի օրինակ: «Սաթենիկը մի վարդ էր մեր բեմում...և Սեդայի նման (Շանթի հերոսուհին), որի անկրկնելի կատարողը եղավ, երազներով միայն լցրեց կյանքի «ունայնության փոսը»: Այդ մարմնեղ, գեղեցիկ կինը անշոշափելի մի սիլուետ էր այդ կերպարում: Ես դեռ չեմ տեսել ոչ մի երկրում, ոչ մի թատրոնում այդքան լուսավոր հավերժահարս, ոչ էլ լսել եմ ոչ մի առվակում այդքան թախծալից մրմունջ»: Դժվար է ասել, Սաթենիկ Ադամյանի մասին գրվելիք որևէ ծավալուն մենագրություն այդքան բան կասի ընթերցողին, որքան Փափազյանի այս մեկ պարբերությունը: Կարելի է Փափազյանի գրքերից քաղել տասնյակ ու տասնյակ նման միկրոդիմանկարներ ոչ միայն արվեստի ու գրականության մարդկանց մասին: Ահա Վ. Ի. Լենինի գործի խորհուրդը բացահայտող մի քանի տող:

«...Նա ... իր հետ բերում էր մի գաղափար... որով և կասեցրեց, ետ մղեց ու փարատեց խավարը...և ապստամբած ժամանակը դրեց իր նոր հունի մեջ՝ ուղղեց: Եվ հիմա չի հեռանա այդ աստղը մարդկության երկնակամարից, ոչ էլ կդադարի նա լուսավորել մարդկության միտքը, որովհետև ժամանակը ոչ կանգ կառնի իր ընթացքի մեջ, ոչ էլ ետ կդառնա...Ինչպես ասում է Դավի՞թ Անհաղթը «Ոչ եղիցի չեղեալ, զոր ինչ եղեն»: Ասում էին պարզակենցաղ է նա ու համեստ, և մեծությունը համեստ է միշտ, և ժողովուրդը նրան միայն հայրանունով էր կոչում... Նա ճշմարտությունն էր, և ճշմարտությունը չի ոսկվի ածականներով: Ահա թե ինչու լավագույն փառաբանությունը նրա հիշատակին՝ նրա գործը շարունակելն է...»:

Վ. Փափազյանի մարգարեական այս ճըշմարտությանը տասնամյակներ հետո միայն հասան խորհրդային երկրի կառավարիչները, և այսօր ուղիներ են որոնում շարունակելու Լենինի գործը

Այսպես էր Փափազյանի արվեստը և բեմում՝ ճասցված ծայրագույն թանձրության: Հաճախ առանց բառերի և կամ հատ ու կենտ բառերով արտիստը հանդիսատեսին էր հաղորդում մի ողջ գործողության բովանդակությունը: Մտաբերենք մի պահ, թե ինչպես էր Փափազյան-Համլետը դիմավորում Օֆելյային «լինել, թե չլինել» հռչակավոր մենախոսության ավարտից հետո: Ու երբ պատրաստվում էր դուրս ելնել բեմից, հանկարծ տեսնում էր դեպի իրեն եկող սիրած աղջկան: Փափազյանը քարանում էր ապոլոնյան իր կեցվածքով, աչքերի մեջ արևի լույս և հիացք ու արտաբերում էր սրտի խորքից մի հատիկ նախադասություն. «Սիրուն Օֆելյա՞ն, ո՜վ հավերժահարս, աղոթքներիդ մեջ քող հիշվեն նաև բոլոր մեղքերս»: Ընթերցողը գիտե, որ Շեքսպիրի ողբերգության մեջ Համլետի և Օֆելյայի սիրո և ոչ մի տեսարան չկա, այդ մասին միայն խոսում են: Եվ այս մի հատիկ նախադասությունը Փափազյանը արտաբերում էր այնպես, որ փոխարինել կարող է մի մեծ սիրավեպի, միաժամանակ արդարացնելով նրա խոստովանությունը գերեզմանոցի տեսարանում, թե «քառասուն հազար եղբայրների սերը չէր կարող հավասարվել իմ սիրուն»: Փափազյանի բեմական արվեստի այսօրինակ խտացումի անկորուստ անդրադարձը գրքերում՝ նրա գրչի մեծագույն արժանիքներից է:

Վ. Փափազյանը իսկական բանաստեղծ է իր արձակում: Նրա գրչին հատկանշական են ոգորող ռոմանտիկան, քնարականությունը, երաժշտականությունը, որոնցով և պայմանավորված է

նրա խոսքի գերհուզականությունը: Բեմում խոսքը արտիստի շուրթերին երգ էր ու երաժշտություն, առանց մեկ վայրկյան իսկ դադարելու խոսակցություն լինելուց: Նույնը և գրքերում: Երաժշտականությունը գալիս էր հույզի վարարումից, չափաբերական արվեստին բնորոշ տաղաչափությունից ու կշռույթից: Այս է պատճառը, որ արտիստի գրքերի տասնյակ էջերը հիշեցնում են արձակ բանաստեղծություններ: Խոսքի ներքին տաղաչափության կշռույթի պահպանման միջոցներից մեկը փափազյանական ինքնատիպ շարադասությունն է, որը սնունդ է առել մեր դասական լեզվից, Խորենացուց ու Նարեկացուց, մեր դարավոր մատենագրությունից:

«Եվ» շաղկապի, դերանունների, կապական այլ բառերի շռայլ շրջանառությունը, հաճախ և բառերի կրկնությունը միշտ շիկացած են պահում շարադրանքի ներքին շիղը:

Միապաղաղությունից խիստ զերծ է Փափազյանի լեզուն, ինչպես նրա դերասանական արվեստն էր զերծ: Երեկվա նրա Համլետը նման չէր այսօրվա Համլետին: Այլ կերպ չէր էլ կարող լինել, քանզի մարդու այն վիթխարի տեսիլը, որ նրանն էր, մի ներկայացման տևողության ընթացքին անհնար էր պատկերել: Եվ նա ամեն երեկո մի այլ դիտակետից էր ներկայացնում իր հերոսին: Այս էր պատճառը, որ հանդիսատեսը, բազմիցս տեսած լինելով արտիստին նույն դերում, շտապում էր դարձյալ տեսնելու: Նույնը բնորոշ է և դերասանի գրավոր խոսքին: Ընթերցողը հաճախ է անդրադառնում միևնույն նախադասությանը, ոչ այն պատճառով, որ անըմբռնելի է, անդրադառնում է մտքի, հույզի, բառաձևման հմայքը կրկին վայելելու մղումից դրդված: Հարափոխ շեշտերի առատությունը մի առանձին գեղեցկություն է հաղորդում Փափազյանի գրավոր խոսքին. «Հակառակ Հեկտորի՝ Տրովադան կործանվեց. հակառակ Հաննիբալի՝ Կարթագենը այրվեց: Հակառակ՝ Պոմպեոսի՝ Ալեքսանդրիան գրավվեց»: Թվում է, այս «հակառակ» բառի օգնությամբ Փափազյանը կարող էր իր միտքը հաջողությամբ ավարտի հասցնել: Բայց այդպես չի վարվում: «Հակառակ» բառը երիցս հոլովվելուց հետո գտնում է նոր շեշտավորում, որը ինքնին բացասումն է միապաղաղության: «Կատոնը չկարողացավ փրկել Ուտիկին»: Դարձյալ նոր շեշտավորում. «Չնայած անձնուրաց հերոսամարտի Կոնստանդին Տրակոցեսի՝ Այա Սոֆիայի գմբեթներին մահիկը նստեց»: Եվ կրկին նորը. «Ասպետական Փարիզը անձնատուր եղավ երիցս...»: Դարձյալ նոր շեշտ. «Հաբսբուրգյան զորքը Վիեննան մի օր իսկ դիմադրելու չափ կորով չունեցավ»... Կրկին նորը, շատ ավելի զորեղ, «Հռոմը՝ նույնպես, Բեռլինը՝ նույնպես, բայց Լենինգրադը՝ Բալթիկայի դշխոն մեռավ, բայց ծնվեց: Մի մեծ էպոս էր այդ հերոսամարտը, մարդու լուսավոր ապագայի անխարդախ մի առհավատչյա, անսխալ դավանանք ժամանակների արդարության»: Լենինգրադի դարպասներին փորագրվելու արժանի այս տողերում ընթերցողին հրապուրում է ոչ միայն բառաձևման, մատուցման եղանակը, այլև այն, որ հազարամյակների պատմություն է խտացված այս մի քանի նախադասության մեջ:

Ողբերգու դերասան էր Վ. Փափազյանը, միևնույն ժամանակ՝ բարձրագույն կարգի կատակերգակ: Նրա արվեստը այս ծայր բևեռների հանգուցավորումն էր, որն իր անդրադարձն է գտել և գրքերում: Հումորն ու հեգներգը, բարեհոգի մեղմ ժպիտն ու զավեշտականը՝ մինչև ոչնչացնող ծաղկերգ, Փափազյանի գրչի մշտական ուղեկիցներն են: Ինչպես արտիստը բեմում, այնպես էլ գրչի մարդը կարողանում է ընթերցողին առնել իր երևակայության թևերին, համակել այլազան տրամադրություններով: Երբեմն միևնույն պարբերության մեջ նա ժպիտ է պարգևում ընթերցողին, հաջորդ ակնթարթին ժպիտը փոխում արցունքի: Ոչնչացնող ծաղկերգին Փափազյանը հաճախ է խառնում բարեհոգի հեգներգը, կարծես մեղմացնելու համար ցավը նրա, ում հարվածում է:

«Մեր խաղացանկը կազմված էր երեք թատերգությունից. «Օթելլո», «Սանդուխտ կույս» և «Ուրվականներ»: Այսպիսով մեր ազգային դրամատուրգիան, հանձին Թովմաս Էֆենդի Թերզյանի, մեր խաղացանկի ճիշտ մեջտեղում փայլում էր իր «Սանդուխտի...» կուսական հղացումով, աջ կողքին իբր լանջապահ ունենալով Շեքսպիրը, իսկ ձախ կողմը՝ Իբսենը»: Հիրավի, դաժան է ասված, բայց չմոռանանք, որ ճշմարտություն է:

Վ. Փափազյանի լեզվահամակարգի մեծագույն արժանիքներից է պատկերակերտումը, որ նույնպես բխում է նրա բեմական արվեստից: Եթե հնարավոր լիներ արտիստի յուրաքանչյուր կեցվածքը փոխակերպել քանդակի, ապա մենք այսօր կունենայինք վերածննդի հանճարեղ անդրիագործների գլուխգործոցների զարմանահրաշ մի թանգարան, եթե հնարավոր լիներ հանձնել կտավներին՝ կունենայինք ռուբենսյան հուրհրատող գույների կախարդական խաղով լցված վիթխարի մի պատկերասրահ, եթե փոխանցվեին ձայնանիշերի, բախտ կունենայինք այսօր լսելու բեթհովենյան սիմֆոնիաների հոգեպարար մեղեդիներն ու ամպրոպագոռ շառաչները: Ահա այս ամենը այս կամ այն կերպ արտացոլվել են նրա գրքերում: Փափազյանը կարողանում է պատկեր ստեղծել երբեմն մեկ բառով, մեկ սեղմ նախադասությամբ, մեկ պարբերությամբ: Ապշեցնում է Փափազյանի պատկերակերտման արվեստը հատկապես դիմանկարի ժանրում, որի անհերքելի վկայությունը Սուլթան Համիդի դիմանկարի ուրվագիծն է: «Սև սաթի գույնով ներկված մորուք, լայն վերքի նման լպրծուն շրթներ, հին կիտրոնի գույնի այտոսկրեր և լեշանարակ զառամ անգղի կտուցի նման մի չարագուշակ քիթ, որի երկու կողմերը սև, խորաթափանց, մահագուշակ վախով ու կասկածով անվերջ չարկչրկված և արնաներկ շրջագծերով՝ երկու խոշոր աչք: Մի կարմիր ֆես՝ լերդացած արյան անցուք երանգով, որն իջնում էր թավ, ածուխի պես սև հոնքերի վրա, ու մազաղաթյա հովհարի չափ լայն, ամեն ինչ լսող ցցուն ականջներ... Այս քստմնելի պատկերի մեջ միակ առարկան, որ չարագուշակ չէր, ադամանդյա հոյակապ աստղն էր, որ ճառագայթում էր խալիֆայի մեդավոր կրծքին, ինչպես արդար արևի ցոլքը գարշահոտ ճահճի պղտոր երեսին»: Թվում է, թե ընթերցողը կանգնած է վերածննդի հանճարեղ վարպետներից մեկի գլուխգործոցի առաջ, թվում է, թե մեկ անհատը չէ, որ կարող էր ստեղծել այս պատկերը, այլ մի ամբողջ ժողովրդի հավաքական միտքն ու սիրտը՝ արդար զայրույթի պահին:

Փափազյանի բեմական արվեստը հարուստ էր հրաշք-ակնթարթներով, որոնց անդրադարձը գրքերում զարմանահրաշ մակդիրներն են: Մեկ կամ երկու բառ՝ և պատկերը կենդանանում է ընթերցողի աչքի առաջ, շարժվում: «Թիկնադարձ արհամարհանք» բառերին հանդիպելիս մեզ հասնում է ոչ միայն մարդու վերաբերմունքը, այլև իմաստը ընթացքի մեջ: «Սառցահույզ մտերմություն, աննառագայթ արվեստ, արհամարհանքի քթոտ հայացք, լեռնակուտակ կրծքեր, անշուրթ հայացք, մեխած շրթներ» և նրաման տասնյակ ու տասնյակ նարադրություններ անօրինակ ուժգնություն են հաղորդում Փափազյանի խոսքին: Ամենից ավելի ապշեցնողը միմյանց բացասող հասկացությունների համադրություններն են: «Հոգատար բռնություն»: «Հոգատարություն» հասկացությունը ժխտումն է «բռնության» և ընդհակառակը: Փափազյանը հարադրել է այս ծայր բևեռները և ստեղծել համամարդկային մի մեծ ողբերգության պատկեր, որ եղել է, կա և լինելու է մարդկային հասարակության կյանքում: Ժամանակակիցներս ավելի խորն ենք զգում այս հարադրության իմաստը, որը բարձրանում է մինչև պետական քաղաքականության ոլորտները, երբ հարկ է լինում բռնի ուժով խլացնել ազատության ճիչը:

Արտիստի գրավոր խոսքն անչափ հարուստ է թևավոր մտքերով, որոնք բյուրեղացած իմաստություններ են: Դրանք հայտնվում են նրա գրքերի էջերում, սովորական ընծայագրերում, նամակներում, երկտողերում, ամենուրեք: Միշտ չէ և բոլորը չէ, որ միանգամից նկատել կարող են այդ իմաստությունները Փափազյանի մտքերի հորձանուտում: «Հանցանք է արշավի ձիուն արորի լծելը»— այս միտքը առնված է շատ առօրեական պատմությունից, որպիսին արվեստագետներին նվազ վարձատրելու խնդիրն է մեզանում: Բայց երբ պարբերությունից առանձնացնում ենք այդ չորս բառը, ապա հաղորդակից ենք դառնում մարդկային ակնհայտ մի ողբերգության, որպիսին իր տեղը չգտած մարդու ներքին դրաման էր, մյուս դեպքում, երբ արորի ձին, այսինքն անարժան մեկը տեղ է զբաղեցրել արշավարանում և իր բարձունքից մտրակում է արժանավորներին:

«Գաղափարը քանդելիս ստեղծում է: Գաղափարը ժանտամահ՝ սով կամ հրդեհ չէ, որ ավերակներ թողնի հետևից»: Ահա մի միտք, որի համար միլիոնավոր մարդիկ հատուցել են կյանքի գնով անցած տասնամյակների ընթացքում: Եվ միայն հիմա, դեմոկրատիայի այս լույս օրերին հնարավոր դարձավ աներկյուղ ասել այն, ինչն արգելված էր ասել: Փոխվեցին ժամանակները, փոխվեց մարդկային մտածողությունը՝ հաստատելով Փափազյանի մեկ այլ միտքը. «Կյանքում ոչինչ կա հավիտենական... մշտնջենականությունը իմաստից զուրկ է, և կյանքը ինքը սկզբնավորությունների անվերջ շարան է»: Դարձյալ մի երկու թևավոր միտք: «Ժամանակների կարգին ենթարկված ապրելակերպը գերագույն տանջանք է գերզգայուն մարդու համար»: «Այսօրվա պաշտոնյան նախասահմանված պաշտոնազուրկն է վաղվա»: «Պետք է ժամանակի հետ քայլել, որովհետև երեկը այսօր չէ, ոչ էլ այսօրը՝ վաղը»: Եվ այսպես՝ հարյուրավոր մտքեր, որոնք հավերժական ճշմարտություններ են և արձագանքվելու են գալիքներում ևս:

Վ. Փափազյանի լեզվի մի քանի առանձնահատկությունների հպանցիկ թվարկումից հետո, հարկ է դառնալ նրա լեզվի ակունքներին: Հայ ժողովրդի դժնդակ ճակատագրով կիսվել է հայությունը, կիսվել են և լեզուն ու գրականությունը: Արտիստը, հետո և գրչի մարդը իր ամբողջ կյանքում ապրեց մի մեծ մտահոգությամբ՝ ի մի բերել ժողովրդի տարանջատ հատվածները, վերականգնել ժողովրդի երբեմնի ամբողջությունը: Իմաստուն արվեստագետը խորունկ ցավով տեսավ, որ մեր դաժանացած դարում անհնարին է ֆիզիկական ամբողջությունը: Առայժմ միակ ճշմարիտ արահետը նա տեսավ հոգևոր միասնության մեջ, որի անսխալական միջոցը լեզուն է: Վ. Փափազյանը իր լեզվի հիմքում պահեց արևելահայերենը, մեր պետական լեզուն,

համեմեց այն արևմտահայերենի բազում գեղեցկություններով, ապա անհրաժեշտը առավ ժողովրդական բառ ու բանից, օգտվեց օտար լեզուների բառամթերքից, այդ ամենը շաղախեց լեզվաբանի հմտությամբ ու թրծեց մեր ոսկեղենիկ գրաբարի քուրայում, ստեղծեց իրենը և իր լեզվի կարծրությունը ստուգելու համար պահեց Շեքսպիրի այրող շնչի դիմաց: Այսպիսով, Վ. Փափազյանը կյանքի կոչեց հայոց արքայական լեզուն, դասական փայլով հույժ կենդանի ու ժամանակակից մի լեզու, որն այսօրվանն է ու գալիքներինը:

Արտիստը սկիզբ դրեց համազգային մեծախորհուրդ մի գործի, դարերով ծվատված ու հոշոտված մեր հոգևոր քարտեզի վերականգնմանը՝ բաղձալին թողնելով եկող հայ սերունդներին և ժամանակների արդարությանը, որի մոլեռանդ հավատացողն էր նա:

Վ. Փափազյանի կյանքը արշալույսից մինչ վերջալույս աննահանջ մի մաքառում եղավ հանուն մարդու իդեալի, հանուն իր մայր ժողովրդի առաքուր իրավունքների պաշտպանության: Դարերի կորագիծ ուներ Փափազյանի հայրենասիրությունը: Այն սկիզբ է առել Մաշտոցից ու Խորենացուց, Նարեկացուց ու Դանթեից, Շեքսպիրից, հին ու նոր ժամանակների արդարամիտ իմաստուններից և հանգեց խորախորհուրդ մի վերջակետի՝ «Հայրենի հողում մեռելներն անգամ չեն մրսի»:

Ինչպես դերասանի իր հանճարեղ արվեստով, այնպես էլ գրչով արտիստը աշխարհին պարզեց հայ շեքսպիրապատումը, ստեղծագործ միտքը, տարավ հայկական համամարդկայինը համաշխարհային մշակույթի գանձարանը, դափնիներով պսակեց մայր ժողովրդի հպարտ ճակատը:

Այս էր Վ. Փափազյանի պատմական ծառայությունը իրեն ծնող մայր ժողովրդին ու մարդկությանը:



# ՄԻԱՅՆԱԿՈՒԹՅՈՒՆ

**Վ. ՏՈՒՐՅԱՆ**

ՏԽՐՈՒԹՅԱՆ պահին մեզանից ու՞մ չի ճնշել միայնակության սրտաճմլիկ զգացումը: Իսկ եթե դա մի պահ չէ, այլ ամիսնե՞ր, տարինե՞ր...

Միայնակությունից տառապում են մանուկ հասակում և երիտասարդության տարիներին, հասուն տարիքում և ծերության ժամանակ: Միայնակությունը կյանքի տարբեր փուլերում անհատի վրա ունեցած ազդեցության ընդհանրությամբ հանդերձ, նաև տարբեր ձևերով է անդրադառնում նրա վրա և, համապատասխանաբար, տարբեր ձևերով էլ դրսևորվում է: Ահա թե ինչպես է նկարագրում միայնակության իր զգացումը «Огонек» (1987, № 22, էջ 23) ամսագրում զառամյալ մի մարդ: «Ուժդ պակասում է, տպավորություններդ՝ թուլանում, ակամայից աշխարհը նեղանում է: Եվ, իհարկե, քեզ հետ ծերանում, հիվանդանում, հետո էլ կյանքից հեռանում են մտերիմներդ, բարեկամներդ, հասակակիցներդ»: Սա, եթե ոչ հոգեկան, ապա կենցաղային միայնակության զգացում է, որը սպառնում է մեկուսացմամբ: Իսկ ահա թե ինչպես է արտահայտում այդ զգացումը երիտասարդ սպան «Комсомольская правда»-ում (13. 08. 1988) տպագրված նամակում. «Ես քսաներեք տարեկան եմ, բայց չունեմ ընկեր, մտերիմ ու հարազատ մարդ: Արդեն քանի տարի է, ինչ միայնակությունը հետապնդում է ինձ, և ուժ չունեմ ազատվել ինձ շրջապատող դատարկությունից: Երբեմն սարսափում եմ, չէ որ կյանքիս լավագույն տարիներն անցնում են»:

Ինչի՞ մասին են այս տողերը. եսամոլ ու մեկուսացած մարդու միայնակությա՞ն, թե՞ ինքնամփոփ և շփվելու անկարող մարդու, իսկ գուցե մարդկանց սոցիալական մեկուսացման մասի՞ն է: Ամեն դեպքում, պետք է ենթադրել, որ միայնակության այս բոլոր ախտանիշները այս կամ այն չափով արդյունք են սոցիալական իրականությունից անհատի խորթացման:

Հասարակության ուշադրությունն ավելի ու ավելի գրավող և սոցիալական սրություն ձեռք բերած այս խնդիրը գրեթե լռության է մատնվել մեր գիտական և հրապարակախոսական գրականության կողմից:

Միայնակությունը համարում են դարի հիվանդություն: Տարբերում են բարոյական (հոգեկան) և ֆիզիկական միայնակություն, մանկական և ծերունական (զառամյալ) միայնակություն, կանացի միայնակություն: Սակայն, անկախ դրանից, որպես սոցիալական և սոցիալ-հոգեբանական երևույթ, այն ունի իր ամբողջական բնութագիրը: Ամերիկացի հոգեբույժ Է. Ֆրոմը իր «Փախուստ ազատությունից» աշխատության մեջ խոսում է անհատների համար ընդհանուր երկու պահանջի՝ այլ անհատների հետ կապի և ազատության կամ անկախության պահանջի մասին: Սրանց հիմքում, Ֆրոմի կարծիքով, ընկած են ոչ թե ֆիզիոլոգիական պրոցեսներ, այլ մարդկային կերպարի էությունը և կենսափորձը: Միայնակությունից խուսափելու անհրաժեշտության մասին նա այսպես է գրում. «Արժեքների, խորհրդանիշերի, ձևերի հետ կապի բացակայությունը մենք պետք է սահմանենք որպես բարոյական միայնակություն, ընդ որում, ցույց տալով, որ բարոյական միայնակությունը հավասարազոր է ֆիզիկականին, կամ ավելի ճիշտ՝ ֆիզիկական միայնակությունը դառնում է անտանելի միայն այն դեպքում, եթե այն զուգակցվում է բարոյական միայնակության հետ: Այսպիսի վիճակից է մարդն ամենից շատ վախենում» (տե՛ս Кузнецов О. Н., Лебедев В. И., «Психология и психопатология одиночества». М., Медицина, 1972 г., с. 26):

Միայնակությունը, որպես անհատի սո-

---

*ՏՈՒՐՅԱՆ ՎԼԱԴԻՄԻՐ ԱՂՎԱՆԻ— ՀԿԿ Խորհրդային շրջկոմի առաջին քարտուղար, փիլիսոփայական գիտությունների թեկնածու*

ցիալ-հոգեբանական վիճակ, միակցում է և՛ օբյեկտիվ, և՛ սուբյեկտիվ տարրեր և, ըստ էության, հետևանք է մարդու սոցիալական անկարգավորվածության: Այն ունի իրեն բնորոշ դրսևորումներ և ամեն մի առանձին դեպքում անհատական երանգավորում, քանի որ դրա կրողը կոնկրետ մարդն է իր կոնկրետ ապրելակերպով և հոգեբանական կերտվածքով: Միայնակությունը կարելի է բնորոշել և՛ որպես միայնակ մարդու վիճակ, որը չունի ընտանիք, հարազատներ, մտերիմներ, հասակակիցներ կամ որևէ պատճառով կտրվել է նրանցից, և՛ որպես այնպիսի անհատի վիճակ, որը ընդհանուր քիչ բան ունի շրջապատի հետ, օտար է նրա համար, հասարակական կյանքում իր տեղը չի գտել և կորցրել է հաղորդակցվելու զգացումը, իր ուժերի նկատմամբ վստահությունը:

Իրենց սոցիալ-հոգեբանական դրսևորման մեջ այս երկու վիճակները համընկնում են, այսինքն նրանք ավելի շատ ընդհանրություններ ունեն, քան տարբերություններ: Հասկանալի է, որ իրականում միայնակ մարդը միայնակության զգացմանը ավելի է ենթակա, քան մյուսները: Պարզության համար ասենք, որ «միայնակություն» հասկացությունը բնութագրում է մարդու դիրքը ընտանիքում, ոչ թե նրա ընտանեկան դրությունը: 1939, 1959, 1970 և 1979 թթ. խորհրդային մարդահամարների ժամանակ միայնակ են համարվել այն անձինք, ովքեր տվյալ պահին ամուսնացած չեն եղել, ընտանիք չեն ունեցել, և կանոնավոր ֆիզիկական կապ չեն պահպանել ընտանիքի հետ: 1959 թ. մարդահամարի ժամանակ միայնակները ԽՍՀՄ-ում հաշվվել են 9,4 մլն մարդ կամ ամբողջ ազգաբնակչության 4,5 տոկոսը, 1970 թ. նրանք արդեն 14,2 մլն էին (5,9 տոկոս), 1979 թ.՝ 15,7 մլն (6 տոկոս): Հայկական ԽՍՀ-ում համապատասխանաբար 1959 թ. 29790 մարդ կամ հանրապետության ամբողջ բնակչության 1,6 տոկոսը, 1970 թ.՝ 41 հազար (1,6 տոկոսը), 1979 թ.-ին՝ 59600 կամ 1,7 տոկոսը: Ինչպես տեսնում ենք և՛ մեկ, և՛ մյուս դեպքում բացարձակ թվի մեծացման հետ զուգընթաց մեծանում և դրանով էլ տագնապ է հարուցում բնակչության ընդհանուր թվաքանակում միայնակների տեսակարար կշիռը: Հիմնականում նրանք են կազմում միայնակությունից տառապողների սոցիալական բազան:

Որո՞նք են միայնակության սոցիալ-հոգեբանական դրսևորումները: Մեր կարծիքով, միայնակությունը իր սկզբնական փուլում հանդես է գալիս ավելի շատ որպես անհատի հոգեբանական, հոգեկան անհարմարավետության զգացում, որը սրվելով, ճգնաժամի հասնելով, կարող է մարդուն հանգեցնել անելանելիության զգացման: Միայնակության սոցիալական բնույթը հիմնականում արտահայտվում է անհատապաշտության, անզգայնության մեջ, որը առաջին հերթին պետք է վերագրել ինչպես մարդկանց սոցիալական կարգավորվածության մեջ թույլ տրված բացթողումներին, այնպես էլ դաստիարակության թերություններին: Այս հանգամանքը հատկապես ուշադրություն է պահանջում մեր օրերում՝ անցման շրջանում, երբ տնտեսական և քաղաքական բարեփոխումների պայմաններում հասարակության կենսագործունեության մեջ կտրուկ աճում է անհատի դերը:

Միաժամանակ, միայնակության դրսևորումները համարժեք չեն, և այնպիսի անձնական պատճառների հետ, ինչպես՝ առանձին մարդկանց կյանքի սոցիալական անբովանդակությունը, սոցիալական եսամոլությունը, բարոյական կողմնորոշման կորուստը, կարող են ունենալ նաև այլ պատճառներ՝ հոգեկան տառապանքները, որ առաջանում են մոտիկ, հարազատ մարդու կորստից, իր սոցիալական կարգավիճակի, աշխատունակության, սիրած գործով զբաղվելու հնարավորության կորուստը: Այդ պատճառով էլ հասարակության կարևորագույն խնդիրներից մեկը ոչ միայն մարդու անձնական, այլև սոցիալական արժանապատվության վերականգնումն է: Ներկայումս դա հատկապես հրատապ խնդիր է Հայաստանի համար՝ կապված երկրաշարժի հետևանքների հետ: Չէ որ հազարավոր մարդիկ կորցրել են հարազատներին և մոտիկներին, զրկվել են օթևանից, աշխատանքից, մենակ են մնացել: Ինչքա՞ն են նրանք: Անհրաժեշտ է անցկացնել ռեգիոնալ հարցում, ճշտել այն մարդկանց թիվը (երեխաների, ծերերի, կանանց և հաշմանդամների), ովքեր մենակ են մնացել, միջոցներ մշակել նրանց սոցիալական և սոցիալ-հոգեբանական վերականգնման համար, չեզոքացնել, փարատել նրանց միայնակության զգացումը:

Հասարակության մեջ շփման հնարավորության նվազումը (միայնակ աշխատանքը, ազատ ժամանակը հեռուստացույցի մոտ անցկացնելը) ավելի ու ավելի է ազդում մարդկանց հոգեկանի վրա: Դա հատկապես ծանր են տանում միայնակ մարդիկ: Այդ պատճառով էլ ամենևին պատահական չէ, որ հատկապես այս կարգի մարդիկ ավելի հաճախ են ընկնում ստրեսային, ընկճված վիճակի մեջ, որ նրանց մեջ համեմատաբար մեծ է սուիցիդի բաժինը (ինքնասպանության փորձերն ու դեպքերը): Կարելի է պնդել, որ միայնա-



կությունը, որպես սոցիալ-հոգեբանական երևույթ, դառնում է հիմնական սուիցիդածին գործոնը:

Խնդրի առավել ամբողջական և բազմակողմանի ընկալման համար նշենք, որ տնտեսապես զարգացած երկրներում, ներառյալ նաև սոցիալիստականները, ինքնասպանությունը մեծահասակ բնակչության մահվան պատճառների թվում գրավում է առաջին տեղերից մեկը և երկրորդը՝ անչափահասների և երիտասարդների շրջանում:

Ըստ առանձին ռեգիոնալ հետազոտությունների արդյունքների, ԽՍՀՄ-ում ինքնասպանության մակարդակը կազմում է 20 մարդ՝ 100 հազար բնակչից (համեմատության համար նշենք, որ Հունգարիայում այդ թիվը 43—44 է, Դանիայում՝ 29—31, Ավստրիայում՝ 25—27, այս ցուցանիշը հատկապես բարձր է մերձբալթյան հանրապետություններում: Մեզ մոտ՝ Հայաստանում այն հավասար է 3-ի) («Аргументы и факты» 1988, № 22): Սակայն պետք է վերապահություն անել. այս տագնապալի երևույթի սկզբնապատճառը ոչ այնքան միայնակությունն է՝ որպես սոցիալ-հոգեբանական երևույթ, որքան հասարակական-տնտեսական զարգացման հակասությունների ամբողջությունը, դժվարությունները, իսկ հաճախ էլ՝ անհատի ինքնահաստատման անհնարինությունը, նրա սոցիալական կարգավիճակի սահմանափակումը:

Այս տեսակետից հատուկ ուշադրություն են պահանջում մարդկանց այն տիպերը, որոնք գտնվում են ծերության («ծերունական» միայնակություն) և մանկության (մանկական միայնակություն) տարիքային շրջանակներում: Հայաստանի կոմկուսի Խորհրդային շրջկոմին կից հասարակական կարծիքը ուսումնասիրող լաբորատորիայի հետազոտությունները, որ կատարվել են թոշակառուների շրջանում 1987 թ. (ընդգրկվել է 1200 մարդ, որոնց 15,6 տոկոսը՝ միայնակներ), ցույց են տալիս, որ հարցման ենթարկվածների 46,9 տոկոսն է միայն գոհ իր նկատմամբ հասարակության վերաբերմունքից, չափազանց մեծ է այն մարդկանց թիվը (21,8 տոկոս), ովքեր համարում են, որ այդ վերաբերմունքը բավարար չէ, իսկ 11 տոկոսը դժգոհ է դրանից: Եվ հարցը միայն ցածր թոշակը չէ: Զառամյալների համար առավել կարևոր խնդիր է իրենց առողջական վիճակը, թեև նրանց անհանգստացնում են և՛ ժամանցի սահմանափակ հնարավորությունները (28,8 տոկոս), և՛ ակտիվ հասարակական գործունեությունից կտրված լինելը (20,1 տոկոս), և՛ ընտանիքին պիտանի չլինելու զգացումը (12,2 տոկոս):

Միաժամանակ պետք է ընդգծել, որ նրանց ամենահաստատուն դրությունը, այնուամենայնիվ, ընտանիքում է: Հարցման ենթարկվածների 62 տոկոսը նշում է, որ ընտանիքում իրենց սիրում ու հարգում են, 52,4 տոկոսը՝ որ իրենց ընտանեկան կարգավիճակը էական փոփոխություն չի կրել, նրանք առաջվա պես իրենց ընտանիքի գլխավոր են զգում: Եվ պատահական չէ, որ թոշակառուների ճնշող մեծամասնությունը (բացառությամբ 7,6 տոկոսի) բացասաբար է վերաբերվում ծերանոցներին: Նրանք գտնում են, որ այնտեղ պետք է սննդի որակը լավացնել (43,6 տոկոս), մաքրություն և կարգուկանոն հաստատել (33,6 տոկոս), հարազատների և մերձավորների հետ կանոնավոր տեսակցության հնարավորություն ստեղծել (29,6 տոկոս), լավացնել բժշկական ծառայությունը (26,3 տոկոս), ժամանցի կազմակերպումը (23,6 տոկոս):

Ամբողջությամբ վերցրած, հետազոտությունների արդյունքները հաստատում են հայկական ընտանիքում բարոյական ավանդույթների կայունությունը, նրա հոգատար և հարգալից վերաբերմունքը ծերերի նկատմամբ: Միաժամանակ չի կարելի հաշվի չառնել և անտեսել, որ այդ ավանդույթները լայն հասարակական-պետական օգնության կարիք ունեն, ինչը ներառում է ծերության սոցիալական պաշտպանությունը ապահովելու միջոցների մշակումն ու իրագործումը:

Քննարկվող հարցի շրջանակում հոգածության առարկա են նաև մեկ երեխա ունեցող ընտանիքները: Վերջիններում մենք տեսնում ենք ներկայի «մանկական» և ապագա «ծերունական» միայնակության հաջորդականության հնարավորությունը: Չէ որ միակ երեխաները նույնպես միայնակ են: Եղբայրներ և քույրեր չունենալու պատճառով, արդեն մանկուց, նրանց ազգակցական զգացմունքները թուլանում են, նրանք իրենց ներունակությամբ ավելի նախատրամադիր են եսամոլության, ինքնամփոփության, ինքնամեկուսացման, հաճախ տառապում են կամային հատկանիշների թուլությամբ: Հատկապես այս հատկանիշներից սկիզբ առնելով, արդեն հասուն տարիքում միայնակությունը առավել վտանգավոր է դառնում այն մարդկանց համար, ովքեր տպավորությունների անընդհատ փոփոխության կարիք ունեն, կասկածամիտ են, մեծամիտ, ինքնամփոփ, տարօրինակ, ովքեր առօրյա կյանքում արդեն համարվում են ոչ բոլորովին նորմալ: Այն վտանգավոր է նաև այն մարդկանց համար, ովքեր խոր ցնցում են ապրել, տառապում են խղճի խայթից:

Ի՞նչ կարելի է առաջարկել որպես միայ-

նակությունը հաղթահարելու միջոց: Կարծում ենք, որ առաջինը հասարակության կենսագործունեության բոլոր ոլորտներում անհատի սոցիալական ճանաչման հրամայական անհրաժեշտությունն է, այսինքն՝ ինքնահաստատման համար մարդուն լայն հնարավորությունների ընձեռումը: Ինքնահաստատման գլխավոր պայմանը, ինքնահաստատում, որ ընդունակ է մարդուն հիմնական բավարարություն տալ և նրա կյանքը իմաստալից դարձնել, անընդհատ առաջընթացն է դեպի իրագործելի, հասարակության և անհատի համար կարևոր նպատակներ, այսինքն անհատի զարգացման (ստեղծագործական, մասնագիտական, պաշտոնական և այլն) հեռանկարի առկայությունը:

Երկրորդը հասարակության ինքնավարման ձևերի ըստ ամենայնի ընդլայնումն է որպես անհատի ինքնարտահայտման պայման: Ինքնարտահայտման ձգտումը նպաստում է հասարակական ճանաչման պահանջը, որ անհատը ձեռք է բերում հաղորդակցման ընթացքում: Այդ պահանջը հատկապես վառ է արտահայտվում երիտասարդների մեջ, ովքեր կյանքում դեռ հաստատուն տեղ չեն գրավել:

Երրորդը ընտանիքի ամրացման աճող պահանջն է, նրա ինքնապաշտպանական և վերարտադրողական դերի բարձրացումը: Անհրաժեշտ է ուժեղացնել ուշադրությունը ընտանիքի գաղափարաբարոյական սկզբունքների ամրացման և նորապսակներին ու երեխաներ ունեցող ընտանիքներին ցույց տրվող բազմակողմանի օգնության կազմակերպման նկատմամբ, ամեն գնով խրախուսել և պայմաններ ստեղծել ծեր ծնողների և երիտասարդ ընտանիքների համատեղ կյանքի համար:

Եվ վերջինը դաստիարակության համակարգի մշակումն է, անհատի կենսադիմացկունության, նրա գաղափարական, բարոյական, ֆիզիկական և կամային հատկանիշների ուժեղացումը:

Վերը նշված առաջարկների հետ միաժամանակ, մեր կարծիքով, անհրաժեշտ է ամեն կերպ խթանել համահանրապետական սոցիալ-հոգեբանական ծառայության ստեղծումը, կազմակերպել ըստ հետաքրքրությունների տարբեր միություններ, վետերանների ակումբներ, ընտանեկան հանգստյան տներ (ոչ միայն մոր և մանկան համար): Թերևս նպատակահարմար է նաև հանրապետական և քաղաքային գթության տների, ծերերին և հաշմանդամներին օգնություն ցույց տվող ծառայության կազմակերպումը:

Այսպիսով, միայնակությունը բազմակողմանի խնդիր է և պահանջում է ինչպես միջճյուղային ամբողջական գիտական ուսումնասիրություն, այնպես էլ կանխատեսման գիտականորեն հիմնավորված ծրագիր: Այս հոդվածի նպատակն է սոցիալ-հոգեբանական տեսանկյունից ներկայացնել առկա խնդիրը՝ հասարակության ուշադրությունը հրավիրելու համար:

---

# ՑԱՆԿ

## 1989 թվականին «Լենինյան ուղիով» ամսագրում տպագրված հոդվածների և նյութերի

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ ԵՎ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀՈԴՎԱԾՆԵՐ



## ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄ. ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ







## ԱՐԱԳԱՑՄԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՐԱԿՏԻԿԱ



## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄ, ՊՐՈԲԼԵՄՆԵՐ ԵՎ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ



## ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐ. ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԳՈՐԾԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ



## ԵՐԿՐՈՐԴ ՓՈՒԼԸ՝ ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄ



## ՄՇԱԿՈՒՅԹ ԵՎ ԿՅԱՆՔ





## ԿՐԹՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ. ՊՐՈԲԼԵՄՆԵՐ ԵՎ ՄՏՈՐՈՒՄՆԵՐ



## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՐԽԻՎՆԵՐԻՑ



## ԶՐՈՒՅՑՆԵՐ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ



## ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ



## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ



## ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 200-ԱՄՅԱԿԸ



## ՀՈԳԵՎՈՐ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԿԱՊԵՐ



## ԺԱՄԱՆԱԿ ԵՎ ՄԱՐԴԻԿ

## ՀԻՇԱՐԺԱՆ ՏԱՐԵԹՎԵՐ



## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ



## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ», № 12, 1989 թ.։ Լույս է տեսնում հայերեն և ռուսերեն։

Հանձնվել է շարվելու 9. 11. 89 թ.։ Ստորագրվել է տպագրելու 22. 12. 89 թ.։ ՎՖ 10978։ Ֆորմատ 70×108 1/16։ Թուղթ՝ տպագրական № 2։ Օֆսեթ տպագրություն։ 8,4 պայմանական տպագրական մամուլ։ 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ։ Տպաքանակը՝ 12032։ Պատվեր՝ № 1316։ Գինը՝ 25 կոպ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2։
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.